# «Ողբագույն հռոմեական ողբերգություն Տիտոս Անդրոնիկոսի մասին»

*“The Lamentable Tragedy of Titus Andronicus”*

Ուիլյամ Շեքսպիրի

[1593]

*Թարգմանությունը՝ Լիլիթ «Բաբա» Եազյանի [1978]*

*“Villain, I have done thy mother.”*

## DRAMATIS PERSONAE

SATURNINUS, Son to the late Emperor of Rome, afterwards Emperor.
BASSIANUS, Brother to Saturninus.
TITUS ANDRONICUS, Noble Roman.
MARCUS ANDRONICUS, Tribune of the People, and brother to Titus.
TAMORA, Queen of the Goths.
LAVINIA, Daughter to Titus Andronicus.
*Sons of Titus Andronicus:*
LUCIUS.
QUINTUS.
MARTIUS.
MUTIUS.
YOUNG LUCIUS, Son to Lucius.
PUBLIUS, Son to Marcus Andronicus.
*Kinsmen to Titus:*
SEMPRONIUS.
CAIUS.
VALENTINE.
*Sons to Tamora:*
ALARBUS.
DEMETRIUS.
CHIRON.
AARON, a Moor, beloved by Tamora.
CAPTAIN.
MESSENGER.
CLOWN.
NURSE.
Romans and Goths, Senators, Tribunes, Officers, Soldiers, and Attendants.

]0[

## ACT I. SCENE I.

Rome. Before the Capitol. The tomb of the Andronicus is just visible. Tribunes and Senators enter upstage. Saturninus and his followers at one door downstage, and Bassianus and his followers at the other.

### SATURNINUS.

Ազնի՛ւ պատրիկներ, հովանաւորներ իմ իրաւունքի, Զէնքով պաշտպանէք իմ դատը արդար. Եւ դուք, սիրելի իմ բարեկամներ, հայրենակիցներ, Պաշտպանէք սրով իմ ժառանգական իրաւունքն այստեղ. Ես առաջնեկն եմ այն հզօր մարդու, Որ կայսերական թագը Հռոմի վերջինը կրեց։ Ուրեմն, թողէք իմ հարազատ հօր փառքն ապրի իմ մէջ, Եւ մի հանդուրժէք, որ նշանակեն իմ աւագութիւնն անարժանութեամբ։

Nobles patriciens, protecteurs de mes droits, défendez par les armes la justice de ma cause; et vous, mes concitoyens, mes fidèles partisans, soutenez par l'épée mes droits héréditaires. Je suis le fils aîné du dernier empereur qui ait porté le diadème impérial de Rome: faites donc revivre en moi la dignité de mon père, et ne souffrez pas l'injure qu'on veut faire à mon âge.

### BASSIANUS.

Հռոմէացինե՛ր, իմ բարեկամներ, իմ կողմնակիցներ,իմ իրաւունքի ազնի՛ւ պաշտպաններ, Եթէ երբեւէ ձեր Բասիանոսը՝ որդին Կեսարի, Արժանացել է սիրալիրութեանն հզօր Հռոմի, Ուրեմն, հսկէք Կապիտոլիումի մուտքը վեհաշուք, Մի՛ թողէք երբեք ձեռքն անպատուութեան մօտենայ գահին, Որ նուիրուած է առաքինութեան սրբագործմանը, Արդարութեանը, ազնուութեանը եւ բարութեանը։ Թող արժանիքներն արդար ընտրութեամբ փայլեն Հռոմում։ Հռոմէացինե՛ր, կռուէք ձեր ազատ ընտրութեան համար։

Romains, mes amis, qui suivez mes pas et favorisez mes droits, si jamais Bassianus, le fils de César, fut agréable aux yeux de Rome impériale, gardez donc ce passage au Capitole, et ne souffrez pas que le déshonneur approche du trône impérial, consacré à la vertu, à la justice, à la continence et à la grandeur d'âme: mais que le mérite brille dans une élection libre; et ensuite, Romains, combattez pour maintenir la liberté de votre choix.

*[Marcus Andronicus enters aloft, with the crown.]*

### MARCUS.

Արքայորդինե՛ր, դուք, որ ջանում էք կողմնակիցներով, բարեկամներով Փառամոլութեամբ ձեռք գցել օրէնք եւ իշխանութիւն, Իմացէ՛ք, Հռոմի ժողովուրդն արդէն, Ում իրաւունքը վստահուած է մեզ, Հռոմի կայսր է միաձայն ընտրել Անդրոնիկոսին Եւ մեծարում է իր զօրավարին՝ Պիոս անունով, Քանզի Հռոմին ծառայել է նա բազմաթիւ ու մեծ արժանիքներով։ Ազնուական է ու զինուոր խիզախ, Եւ մեր քաղաքի պարիսպներից ներս չի ապրել ցայսօր նրա պէս քաջ մարդ։ Սենատի կանչով վերադառնում է պատերազմներից, Որ նա մղում էր ընդդէմ գոթերի. Նա՝ մեր թշնամու ահ ու սարսափը, Իր որդիներով հնազանդեցրեց ռազմատենչ մի ազգ։ Տասը տարի է անցել այն օրից, Երբ առաջինը ինքն յանձն առաւ այս դատն Հռոմի Ու խարազանեց զէնքով թշնամու գոռոզութիւնը. Հինգ անգամ Հռոմ նա վերադարձաւ՝ արեամբ շաղախուած, Եւ ռազմի դաշտից իր որդիների դիերը բերեց։ Արդ, ծանրաբեռնուած փառքի աւարով, Վերադառնում է Անդրոնիկոսը փառապանծ Հռոմ, Բարի Տիտոսը, կռիւների մէջ զօրացրած ոգին։ Աղաչում եմ ձեզ նրա անունով, Ում կ'ուզենայիք արժանիօրէն կարգել յաջորդող, Յանուն սենատի սուրբ օրէնքների, յանուն սրբազան Կապիտոլիումի, Որոնց ծնրադիր դուք մեծարում էք ու երկրպագում, Ետ քաշուէք արագ, զէնքը վար դրէք, Եւ ինչպէս հարկն է աղերսուներին, Պաշտպանէք ձեր դատն հնազանդօրէն ու խաղաղութեամբ։

Princes, dont l'ambition secondée par des factions et par vos amis lutte pour le commandement et l'empire, sachez que le peuple romain, que nous sommes chargés de représenter, a, d'une commune voix, dans l'élection à l'empire romain, choisi Andronicus, surnommé le Pieux, en considération des grands et nombreux services qu'il a rendus à Rome. La ville ne renferme point aujourd'hui dans son enceinte un homme d'un plus noble caractère, un plus brave guerrier. Le sénat l'a rappelé dans cette ville, à la fin des longues et sanglantes guerres qu'il a soutenues contre les barbares Goths. Ce général, la terreur de nos ennemis, secondé de ses fils, a enfin enchaîné cette nation robuste et nourrie dans les armes. Dix années se sont écoulées depuis le jour qu'il se chargea des intérêts de Rome, et qu'il châtie par ses armes l'orgueil de nos ennemis: cinq fois il est revenu sanglant dans Rome, rapportant du champ de bataille ses vaillants fils dans un cercueil. Et aujourd'hui enfin, l'illustre Titus Andronicus rentre dans Rome chargé des dépouilles de la gloire, et ennobli par de nouveaux exploits. Pour l'honneur du nom de celui que vous désirez voir dignement remplacé, au nom des droits sacrés du Capitole que vous prétendez adorer, et de ceux du sénat que vous prétendez respecter, nous vous conjurons de vous retirer et de désarmer vos forces; congédiez vos partisans, et faites valoir vos prétentions en paix et avec modestie, comme il convient à des candidats.

SATURNINUS.
Տրիբունն այնպէ՛ս գեղեցիկ խօսեց, Որ մեղմեց ոգիս։
Combien l'éloquence du tribun réussit à calmer mes pensées!

BASSIANUS.
Մարկ Անդրոնիկո՛ս, Հաւատում եմ քո անկեղծութեանն ու շիտակութեանը Եւ այնպէս սիրում, մեծարում եմ քեզ, Քո ազնուատոհմ եղբայր Տիտոսին՝ իր որդիներով, Եւ Հռոմի զարդ ու գեղեցկափայլ սուրբ Լաւինիային, Ում խոնարհաբար մտքերս են ուղղուած, Որ անմիջապէս արձակում եմ ես իմ խիստ սիրելի բարեկամներուն Եւ դնում դատիս կշռաքարերը Իմ երջանկութեան ու ժողովրդի սիրոյ նժարին։
Marcus Andronicus, je mets ma confiance dans ta droiture et ton intégrité; et j'ai tant de respect et d'affection pour toi et les tiens, pour ton noble frère Titus, pour ses fils et pour celle devant qui toutes mes pensées se prosternent, l'aimable Lavinia, le riche ornement de Rome, que je veux à l'instant congédier mes amis, et remettre ma cause à ma destinée et à la faveur du peuple, afin qu'elle soit pesée dans la balance.

*[The Soldiers of Bassianus exit.]*

SATURNINUS.
Իմ բարեկամնե՛ր, դուք, որ փութացիք իմ դատի համար, Շնորհակալութիւն, արձակում եմ ձեզ։ Իմ հայրենիքի պաշտպանութեանը ու ազնիւ սիրոյն Յանձնում եմ ահա իմ անձն ու դատը, իմ իրաւունքը։
Amis, qui vous êtes montrés si zélés pour mes droits, je vous rends grâces, et vous licencie tous. J'abandonne à l'affection et à la faveur de ma patrie, moi-même, ma personne et ma cause.

*[The Soldiers of Saturninus exit.]*

SATURNINUS [cont.]
Հռոմ, սիրում եմ քեզ ազնուաբար, Դու էլ իմ հանդէպ եղիր բարեգութ ու արդարացի։ Բացե՛ք դարպասը եւ ինձ ներս թողէք։

Rome, sois juste et favorable envers moi, comme je suis confiant et généreux envers toi. Ouvrez les portes et laissez-moi entrer.

## BASSIANUS.

Բարի տրիբուններ, ինձ էլ ներս թողէք, համեստ մրցակցիս։
Et moi aussi, tribuns, son pauvre compétiteur.

*[While Saturninus and Bassianus move to enter the Capital a Captain enters.]*

## CAPTAIN.

Հռոմէացինե՛ր, ճանապարհ բացէք, բարի Տիտոսը՝ Առաքինութեան պաշտպանը ազնիւ, ահեղ մարտերի զօրավարն յաղթող եւ ընտրելագոյն զինուորն Հռոմի, Վերադառնում է փառքով ու պատուով այն երկրներից, Որտեղ իր սրով իր տիրոյթների սահմանը գծեց եւ գերութեան լուծ դրեց Հռոմի թշնամու վրայ։
Romains, faites place: le digne Andronicus, le patron de la vertu, et le plus brave champion de Rome, toujours heureux dans les batailles qu'il livre, revient, couronné par la gloire et la fortune, des pays lointains où il a circonscrit avec son épée et mis sous le joug les ennemis de Rome.

*[Martius and Mutius enter with two men bearing a coffin covered with black; then Lucius and Quintus, then Titus Andronicus; followed by Tamora with Alarbus, Demetrius, Chiron and Aaron the Moor. The coffin is set down and Titus speaks.]*

## TITUS.

Ողջո՛յն քեզ, Հռոմ, դո՛ւ եւ յաղթապանծ սգոյ զգեստում. Ահաւասիկ, ինչպէս եռակայմ մի նաւ, որ բեռը թափած՝ Վերադառնում է թանկ ապրանքներով այն ծովախորշը, Որտեղից խարիսխ նա բարձրացրեց, Այնպէս էլ ահա Անդրոնիկոսը՝ կուրծքը զարդարած դափնու ճիւղերով, Վերադառնում է իր հայրենիքը՝ արցունքն աչքերին, Եւ ողջունում է քեզ երջանկութեան սուրբ արցունքներով։ Դու մեծ պաշտպանն ես Կապիտոլիումի, Նայիր մօտալուտ արարողութեանն ողորմածաբար։ Ահաւասիկ, Հռոմ, խեղճ աճիւնները քսանհինգ կտրիճ քո որդիների, Պրիամոս արքան հինգ տասնեակ նման զաւակներ ունէր, Ովքեր ապրում են, մատուցիր նրանց քո սէրն անսահման, Իսկ նրանց, ում որ բերել եմ իրենց տունը վերջնական, Թաղիր հարազատ նախնիների մօտ։ Գոթերն հայցեցին, որ պատեան դնեմ ես սուրս այստեղ, Դու, անխի՛ղճ Տիտո՛ս, որ մերձաւորիդ հանդէպ անփոյթ ես, Ինչո՞ւ ես թողնում քո զաւակներին՝ դեռեւս անթաղ, Թափառեն ահեղ Ստիքսի ափին։ Տեղ բացէք նրանց իրենց սիրելի եղբայրների մօտ։
Salut, Rome, victorieuse dans tes robes de deuil! tel que la nef, qui a déchargé sa cargaison, rentre chargée d'un fardeau précieux dans la baie où elle a d'abord levé l'ancre: tel Andronicus, ceint de branches de laurier, revient de nouveau saluer sa patrie de ses larmes; larmes de joie sincère de se retrouver à Rome! O toi, puissant protecteur de ce Capitole, sois propice aux religieux devoirs que nous nous proposons de remplir. Romains, de vingt-cinq fils vaillants, moitié du nombre que possédait Priam, voilà tous ceux qui me restent vivants ou morts! Que Rome récompense de son amour ceux qui survivent, et que ceux que je conduis à leur dernière demeure reçoivent la sépulture avec leurs ancêtres: c'est ici que les Goths m'ont permis de remettre mon épée dans le fourreau. Mais, Titus, père cruel et sans souci des tiens, pourquoi laisses-tu tes fils, encore sans sépulture, errer sur la redoutable rive du Styx? Laissez-moi les déposer près de leurs frères.

*[They open the tomb.]*

TITUS [cont.]

Յարգենք լռութեամբ, ինչպէս ուզում են հանգուցեալները, Դուք հայրենիքի համար զոհուեցիք, ձեզ խաղաղութիւն, Օ՜ դու սրբազան, օրհնեալ ապաստան իմ ուրախութեան, Ազնիւ տոհմերի եւ արիութեան քաղցր մենաստան, Դու որդիներիս խլում ես ինձնից, Որպէսզի նրանք այլեւս ինձ մօտ չվերադառնան։

Saluons-les dans le silence qui convient aux morts! dormez en paix, vous qui êtes morts dans les guerres de votre patrie. O asile sacré, qui renfermes toutes mes joies, paisible retraite de la vertu et de l'honneur, combien de mes fils as-tu reçus dans ton sein, que tu ne me rendras jamais!

LUCIUS.

Տուր մեզ գոթերի ամենաhպարտ, յանդուգն գերուն, Որ կտրատելով նրա մարմինը խարոյկի վրայ՝ «*Եղբայրների հոգիներին*» մենք զոհ մատուցենք Նրանց աճիւնի այս հողազանգուած զնդանի առաջ, Որ նրանց հոգին նիրհէ անխռով, Եւ չվրդովեն մեզ երկրի վրայ իրենց յայտնութեամբ։

Cédez-nous le plus illustre des prisonniers goths, pour couper ses membres, les entasser sur un bûcher, et les brûler en sacrifice ad manes fratrum, devant cette prison terrestre de leurs ossements, afin que leurs ombres ne soient pas mécontentes, et que nous ne soyons pas obsédés sur la terre par des apparitions.

TITUS.

Լուցիո՛ս, ես քեզ տալիս եմ նրան՝ Ամենատոհմիկ այն գերիներից, որն ապրում է դեռ, Դժբախտ թագուհու առաջնեկ որդուն։

Je vous donne celui-ci, le plus noble de ceux qui survivent, le fils aîné de cette malheureuse reine.

TAMORA.

Սպասէ՛ք, եղբայր-հռոմէացիներ, բարեգութ յաղթող, Յաղթապանծ Տիտոս, խղճա մայրական իմ արցունքներին, Որ աւագ որդուս սիրուց են յորդում։ Եթէ սիրում ես քո զաւակներին, Ա՜խ, գիտցիր, ես էլ սիրում եմ որդուս։ Հերիք չէ՞, որ մեզ բերել են Հռոմ՝ Պճնազարդելու քո յաղթանակը ու վերադարձը։ Փառաբանելով Հռոմէական գերութեան լուծը։ Եւ միթէ՞ պէտք է իմ որդիներին Մորթեն փողոցում այն բանի համար, Որ արիաբար պաշտպան կանգնեցին իրենց մայր երկրին։ Եթէ քո որդոց սրբազան պարտքն է սուր բարձրացնել Յանուն պետութեան եւ թագաւորի, Նրանք էլ, Տիտոս, նման պարտք ունեն։ Օ՜ ո՛չ, մի՛ ներկիր քո դամբարանը նրանց արիւնով, Միթէ՞ չես ուզում դու աստուածների բնոյթն ունենալ. Խնայիր նրանց, պարգեւիր դու ինձ բազմագթութիւն, Չէ՞ որ գթութիւնն ազնուականի նշան է ստոյգ։ Երիցս բարի Տիտոս, խնայիր առաջնեկ որդուս։

Arrêtez, Romains! Généreux conquérant, victorieux Titus, prends pitié des larmes que je verse, larmes d'une mère qui supplie pour son fils. Et si jamais tes enfants te furent chers, ah! songe que mon fils m'est aussi cher. N'est-ce pas assez d'être tes captifs, soumis au joug romain et d'être amenés à Rome pour orner ton triomphe et ton retour? Faut-il encore que mes fils soient égorgés dans vos rues, pour avoir vaillamment défendu la cause de leur pays? O! si ce fut pour les tiens un pieux devoir de combattre pour leur souverain et leur patrie, il en est de même pour eux. Andronicus, ne souille point de sang ta tombe. Veux-tu te rapprocher de la nature des dieux? Rapproche-toi d'eux en étant

miséricordieux: la douce pitié est le symbole de la vraie grandeur. Trois fois noble Titus, épargne mon fils premier-né.

TITUS.
Զսպիր քեզ, տիկին, եւ ներիր դու ինձ, Ահաւասիկ նրանց եղբայրները քաջ, Ում դուք, գոթերդ, տեսնում էք մեռած կամ թէ կենդանի, Եւ հիմա նրանք իրենց մորթուած եղբայրների համար Մոլեռանդօրէն զոհ են պահանջում։ Դատապարտուած է քո աւագ որդին, նա պէտք է մեռնի, Որպէսզի նրանք մեղմեն հեծեծող հոգիներն իրենց։
Modérez-vous, madame, et pardonnez-moi. Ceux que vous voyez autour de moi sont les frères de ceux que les Goths ont vus vivre et mourir, et leur piété demande un sacrifice pour leurs frères immolés. Votre fils est marqué pour être la victime; il faut qu'il meure pour apaiser les ombres plaintives de ceux qui ne sont plus.

LUCIUS.
Դուրս տարէք նրան եւ անմիջապէս կրակը վառէք, Մենք մեր սրերով խարոյկի վրայ պէտք է կտրատենք Մարմինը նրա, քանի դեռ լրիւ նա չի մոխրացել։
Qu'on l'emmène, et qu'on allume à l'instant le bûcher: coupons ses membres avec nos épées, jusqu'à ce qu'il soit entièrement consumé.

*[Titus' sons exit, dragging Alarbus.]*

TAMORA.
Ինչպիսի՜ դաժան պարտականութիւն։
O piété impie et barbare!

CHIRON.
Միթէ՞ սկիւթացին այս վայրագութեան կէսն անգամ ունէր։
Jamais la Scythie fut-elle à moitié aussi féroce?

DEMETRIUS.
Մի՛ համեմատիր փառատենչ Հռոմն Սկիւթիայի հետ։ Գնաց Ալարբոսն յաւէտ հանգչելու, իսկ մենք, կենդանի՝ Դեռ պէտք է դողանք Անդրոնիկոսի ահեղ հայեացքից։
Ne compare point la Scythie à l'ambitieuse Rome. Alarbus marche au repos; et nous, nous survivons pour trembler sous le regard menaçant de .

TITUS.
Համբերե՛ք ձեզ, տիկին, և ներե՛ք ինձ: Սրանք իրենց եղբայրներն են, որոնց ձեր գոթերը տեսան կենդանի և մեռած. և իրենց եղբայրների համար, ովքեր սպանվել են կրոնաբար, նրանք զոհ են խնդրում։ Դրանով ձեր որդին նշանավորվում է, և նա պետք է մեռնի, որպեսզի հանգստացնի նրանց հառաչող ուրվականներին, որոնք արյուն են պահանջում։
Soyez patiente, madame, pardonnez-moi. Ce sont leurs frères, que vos Goths ont vus vivants et morts. Et pour leurs frères qui ont été tués religieusement, ils demandent un sacrifice. Cela marque votre fils et il doit mourir pour apaiser leurs fantômes gémissants qui demandent du sang.

*[Lucius, Quintus, Martius and Mutius re-enter with their swords all bloody.]*

LUCIUS.
Առաջնորդ ու հա՛յր, նայիր, ինչպէս ենք մեր հռոմէական Ծէսը կատարել: Նրա մարմնի ողջ անդամները ու որովայնը Կերակրում են օրհնեալ կրակին, եւ թանձր ծուխը կնդրուկի նման երկինքն է բռնել: Այլ բան չի մնում, եթէ ոչ՝ թաղել մեր եղբայրներին Ու ռազմի փողով ողջունել նրանց այստեղ՝ Հռոմում:
Enfin, mon seigneur et père, nous avons accompli nos rites romains: les membres d'Alarbus sont coupés, et ses entrailles alimentent la flamme du sacrifice, dont la fumée, comme l'encens, parfume les cieux: il ne reste plus qu'à enterrer nos frères, et à leur souhaiter la bienvenue à Rome au bruit des trompettes.

TITUS.
Թող այդպէս լինի, եւ թող Տիտոսը Հրաժեշտի վերջին խօսքերը ուղղի նրանց հոգիներին:
Qu'il en soit ainsi, et qu'Andronicus adresse à leurs ombres le dernier adieu.

*[The coffin is placed in the tomb.]*

TITUS [cont.]
Այստեղ, իմ որդիք, դուք խաղաղութեամբ ու փառքով քնէք, Այստեղ դուք հանգչէք, քաջեր Հռոմի, Հեռու երկրային պատահարներից ու փորձանքներից: Այստեղ չի հսկում դաւաճանութիւնը, Այստեղ չեն աճում թունոտ նախանձն ու թշնամութիւնը, Այստեղ չեն շաչում փոթորիկները, Այստեղ իշխում են լոկ լռութիւնը ու յաւէտ քունը: Այստեղ, իմ որդիք, դուք խաղաղութեամբ ու փառքով քնէք:
Reposez ici, mes fils, dans la paix et l'honneur; intrépides défenseurs de Rome, reposez ici, à l'abri des vicissitudes et des malheurs de ce monde. Ici ne se cache pas la trahison, ici ne respire pas l'envie: ici n'entre point l'infernale haine; ici nulle tempête, nul bruit ne troubleront votre repos; vous y goûterez un silence, un sommeil éternels. Reposez ici, ô mes fils, en honneur et en paix!

*[Lavinia enters.]*

LAVINIA.
Թող խաղաղութեամբ ու փառքով ապրի Բարեգութ հայրն իմ, ազնիւ Տիտոսը: Իմ եղբայրների այս գերեզմանին Աշտիս արցունքն եմ որպէս տուրք բերում Եւ ծունր իջնելով ոտքերիդ առաջ՝ Ես ուրախութեան արցունք եմ թափում այս հողի վրայ, Քանզի Հռոմ ես դու վերադարձել: Օրհնիր ինձ այստեղ քո յաղթող ձեռքով, Քո բախտի վրայ պատուափայլ Հռոմը ծափեր է տեղում:
Que Titus aussi vive longtemps en honneur et en paix! Mon noble seigneur et père, vivez aussi! Hélas! je viens aussi payer le tribut de ma douleur à cette tombe, à la mémoire de mes frères; et je me jette à vos pieds, en répandant sur la terre mes larmes de joie, pour votre retour à Rome. Ah! bénissez-moi ici de votre main victorieuse, dont les plus illustres citoyens de Rome célèbrent les succès.

TITUS.
Բարեգութ Հռոմ, այսպէս սիրալիր դու պահպանել ես Կազդուրիչ դեղը իմ ծեր տարիքի, Որ ուրախանայ

սիրտն իմ վշտահար։ Ապրիր, Լաւինիա, իմ տարիներից շա՜տ երկար ապրիր, Թող քո մաքրափայլ առաքինութեան փառքն ապրի յաւէրժ։
Bienfaisante Rome, tu m'as conservé avec amour la consolation de ma vieillesse, pour réjouir mon coeur. Vis, Lavinia: que tes jours surpassent les jours de ton père, et que l'éloge de tes vertus survive à l'éternité de la gloire.

*[Marcus and Tribunes re-enter, followed by Saturninus and Bassianus.]*

MARCUS.
Կեցցէ՜ Տիտոսը, մեր շատ սիրելի տէրն ու եղբայրը, Որ շողշողում է Հռոմի աչքում որպէս մեծ Յաղթող։
Vive à jamais le seigneur Titus, mon frère chéri, héros triomphant sous les yeux de Rome!

TITUS.
Շնորհակալութիւն, իմ ազնիւ եղբայր, սիրելի տրիբուն։
Je vous rends grâces, généreux tribun, mon noble frère Marcus.

MARCUS.
Եղբօրորդինե՜ր, դուք յաղթանակով կռուից դուրս ելաք, Ձեզ հազար ողջոյն, ողջոյն նաեւ ձեզ՝ ողջ մնացածներ, եւ ձեզ, որ անմահ փառքով էք հանգչում։ Ազնիւ պատրիկնե՜ր, որ սուր բարձրացրիք՝ ի ծառայութիւն ձեր հայրենիքի, Դուք ճակատագրով նման էք միմեանց, Սակայն աւելի մեծ յաղթանակ է հանդէսն այս թաղման, Քանզի Սօլոնի երջանկութիւնը Դուք ճաշակեցիք պատուի մահիճում՝ Յաղթահարելով ամէն պատահմունք։ Հռոմի ժողովուրդն, ում բարեկամն ես եղել դու, Տիտոս, Իր տրիբունի ու վստահելի մարդու միջոցով Քեզ է ուղարկում այս սպիտակափայլ անբիծ թիկնոցը եւ քեզ ընտրում է իբրեւ առաջնորդ Մեր վերջին կայսրի որդիների հետ։ Հագի՛ր թիկնոցը եւ մի գլուխ տուր անգլուխ Հռոմին։
Et vous, soyez les bienvenus, mes neveux, qui revenez d'une guerre heureuse, vous qui survivez, et vous qui dormez dans la gloire. Jeunes héros, votre bonheur est égal, à vous tous qui avez tiré l'épée pour le service de votre patrie, et cependant cette pompe funèbre est un triomphe plus assuré, ils ont atteint au bonheur de Solon et triomphé du hasard dans le lit de l'honneur. Titus Andronicus, le peuple romain, dont vous avez été toujours le juste ami, vous envoie par moi, son tribun et son ministre, ce pallium d'une blancheur sans tache, et vous admet à l'élection pour l'empire, concurremment avec les enfants de notre dernier empereur. Placez-vous donc au nombre des candidats; mettez cette robe et aidez à donner un chef à Rome, aujourd'hui sans maître.

TITUS.
Փառաւոր մարմնին լոկ պատշաճում է այնպիսի գլուխ, Որ չի երերում տկարութիւնից ու ծեր հասակից։ Ինչո՞ւ կրելով թիկնոցն սպիտակ՝ ձեզ վշտացնեմ, Այսօր ինձ կ'ընտրեն կողմնակիցներս, Վաղն հրաժեշտ կը տամ իշխանութեանը ու կեանքիս ընդմիշտ՝ Ձեզ նոր հոգսերի վիհը նետելով։ Փառապա՜նծ Հռոմ, քառասուն տարի զինուորդ եմ եղել եւ յաջողութեամբ վարել եմ երկրի ուժերը ռազմի, եւ մարտի դաշտում տասնիսը կտրիճ զաւակ եմ թաղել, Որ զէնքը ձեռքին քաջաբար ընկան յանուն քո պատուի։ Տո՜ւր ինձ պատուաւոր մի ցուպ ծերութեան, Բայց ո՜չ աշխարհը տիրող գաւազան, Որ ուղիղ բռնեց կայսրը մեր վերջին։
Son corps glorieux demande une tête plus forte que la mienne, rendue tremblante par l'âge et la faiblesse. Quoi, irai-je revêtir cette robe et vous importuner? Me laisser proclamer aujourd'hui empereur pour céder demain l'empire et ma vie,

et vous laisser à tous les soins d'une nouvelle élection? Rome, j'ai été ton soldat quarante ans, j'ai commandé avec succès tes forces; j'ai enseveli vingt-un fils, tous vaillants, tous armés chevaliers sur le champ de bataille, et tués honorablement les armes à la main, pour la cause et le service de leur illustre patrie: donnez-moi un bâton d'honneur pour appuyer ma vieillesse, mais non pas un sceptre pour gouverner le monde; il le tenait d'une main ferme, seigneurs, celui qui l'a porté le dernier.

MARCUS.
Պահանջի՛ր, Տիտոս, եւ դու կը ստանաս իշխանութիւնը։
Titus, tu demanderas l'empire, et tu l'obtiendras.

SATURNINUS.
Փառատենչ տրիբուն, էլ ի՞նչ ես ասում։
Orgueilleux et ambitieux tribun, peux-tu oser.

MARCUS.
Համբերի՛ր, Սատուրնինոս։
Modérez-vous, prince Saturninus.

SATURNINUS.
Հռոմէացինե՛ր, դուք արդարացի եղէք իմ հանդէպ, Պատրիկնե՛ր, սուրը մի՛ դնէք պատեան, Քանի դեռ Հռոմի կայսր չի դարձել Սատուրնինոսը։ Օ՜ Անդրոնիկոս, դու աւելի շուտ դժոխք կը գնաս, Քան կը գողանաս ինձ ժողովրդի անկաշառ սրտից։
Romains, rendez-moi justice. Patriciens tirez vos épées et ne les remettez dans le fourreau que lorsque Saturninus sera empereur de Rome. Andronicus, il vaudrait mieux que tu te fusses embarqué pour les enfers que de venir me voler les coeurs du peuple.

LUCIUS.
Քեզ, Սատուրնինոս, Տիտոսն ուզում է բարութիւն անել Մեծահոգաբար, բայց ընդհատում ես դու խօսքը նրա։
Présomptueux Saturninus, qui interromps le bien que te veut faire le généreux Titus.

TITUS.
Գոհացիր, թէկուզ ես ժողովրդի սիրտը գողանամ, Միեւնոյն է՝ նա քո կողմը կ'անցնի։
Calmez-vous, prince: je vous restituerai le coeur du peuple et je le sévrerai de sa propre volonté.

BASSIANUS.
Անդրոնիկոս, չեմ շողոքորթում, Բայց քեզ յարգում եմ եւ պիտի յարգեմ մինչեւ իմ մահը։ Եթէ ուզում ես կողմնակիցներիս դու պաշտպան կանգնել, Քեզ շնորհապարտ կը լինեմ ընդմիշտ, Շնորհակալութիւնն ազնուագոյն մարդկանց վեր է պարգեւից։
Andronicus, je ne te flatte point; mais je t'honore et je t'honorerai tant que je vivrai. Si tu veux fortifier mon parti de tes amis, j'en serai reconnaissant; et la reconnaissance est une noble récompense pour les âmes généreuses.

## TITUS.

Հռոմէացինե՛ր եւ դո՛ւք, տրիբուննե՛ր, Ձեզնից եմ հայցում ձեր իրաւունքը ու ձեր ձայնն արդար, Ուզո՞ւմ էք արդեօք բարեկամաբար դրանք շնորհել Անդրոնիկոսին։

Peuple romain, et vous tribuns du peuple, je demande vos voix et vos suffrages; voulez-vous en accorder la faveur à Andronicus?

## TRIBUNES.

Որպէսզի բարի Անդրոնիկոսին պատշաճն հատուցուի, Նա յաղթանակով Հռոմ վերադարձաւ, Ժողովուրդը կը տայ իր ձայնը նրան, ում նա ուզում է։

Pour satisfaire le brave Andronicus et le féliciter de son heureux retour à Rome, le peuple acceptera l'empereur qu'il aura nommé.

## TITUS.

Շնորհակալութիւն, ազնիւ տրիբուններ, Ուրեմն յարմար է, որ ընտրել կայսրի առաջնեկ որդուն՝ Սատուրնինոսին, ում առաքինութիւնն Հռոմի վրայ այնպէս կը շողայ, Ինչպէս Տիտանի ճառագայթները՝ ի վերայ երկրի, եւ արդարութիւնն այս պետութեան մէջ կը հասունանայ։ Թագադրէք նրան, այս է խորհուրդն իմ, եւ բացականչէք. «*Կեցցէ՛ մեր կայսրը*»։

Tribuns, je vous rends grâces: je demande donc que vous élisiez empereur le fils aîné de votre dernier souverain, le prince Saturninus, dont j'espère que les vertus réfléchiront leur éclat sur Rome, comme Titan réfléchit ses rayons sur la terre, et mûriront la justice dans toute cette république: *"Si vous voulez, sur mon conseil, couronnez-le et criez vive notre Empereur!"*

## MARCUS.

Պլեբէյների ու պատրիկների արդար ընտրութեամբ ու հաւանութեամբ Թագադրում ենք Սատուրնինոսին Հռոմի մեծ կայսր Եւ բացականչում. Կեցցէ՛ մեր կայսր Սատուրնինոսը։

Par le suffrage et avec les applaudissements unanimes de la nation, des patriciens et des plébéiens, nous créons Saturninus empereur, souverain de Rome, et nous crions vive Saturninus, notre empereur!

*[The Crowd cheers.]*

## SATURNINUS.

Վեհանձն Տիտոս, ծառայութիւնդ, Որ մեզ տուեցիր այս ընտրութիւնում, Ստիպում է մեզ տասն անգամ ասել շնորհակալութիւն, Որն արժանիքիդ մի մասն է կազմում։ Ես իմ գործերով պէտք է հատուցեմ քո ազնուութեանը։ Տիտոս, որպէսզի քո հռչակաւոր տոհմը բարձրանայ, Ես Լաւինիային ուզում եմ դարձնել Հռոմի կայսրուհի Եւ կոչել նրան սրտիս տիրուհի Եւ ամուսնանալ սուրբ Պանթէոնում։ Ասա ինձ, Տիտոս, քեզ դո՞ւր է գալիս իմ առաջարկը։

Titus Andronicus, en reconnaissance de la faveur de ton suffrage dans notre élection, je t'adresse les remercîments que méritent tes services, et je veux payer par des actions ta générosité; et pour commencer Titus, afin d'illustrer ton nom et ton honorable famille, je veux élever ta fille Lavinia au rang d'impératrice, de souveraine de Rome et de maîtresse de mon coeur, et la prendre pour épouse dans le Panthéon sacré: parle, Andronicus, cette proposition te plaît-elle?

TITUS.

Այո՛, այդ կապով դուք շնորհում էք ինձ բարձր պարգեւ։ Եւ այստեղ՝ Հռոմի հայեացքի ներքոյ, Սատուրնինոսին՝ Մեր այս տէրութեան ազնիւ արքային ու առաջնորդին, Ես նուիրում եմ իմ սուրը, իմ կառքն ու գերիներին, Ընծաներ՝ արժան տիրոջն Հռոմի։ Ընդունիր դրանք որպէս պարտքի տուրք, մեր փառքի աւար, Որոնք դնում եմ քո ոտքերի տակ։

Oui, mon digne souverain; je me tiens pour hautement honoré de cette alliance; et ici, à la vue de Rome, je consacre à Saturninus, le maître et le chef de notre république, l'empereur du vaste univers, mon épée, mon char de triomphe et mes captifs, présents dignes du souverain maître de Rome. Recevez donc, comme un tribut que je vous dois, les marques de mon honneur abaissées à vos pieds.

SATURNINUS.

Շնորհակալութիւն, իմ ազնիւ Տիտոս, դու հայր իմ կեանքի, Ինչքա՜ն հպարտ եմ այսօր քեզանով, քո ընծաներով։ Հռոմէացինե՛ր, եթէ մոռանամ այս անպատմելի Մեծ շնորհներից նուազագոյնը, Մոռացէ՛ք ընդմիշտ ձեր տիրոջ հանդէպ ձեր վստահելի հաւատարմութիւնը։

Je te rends grâces, noble Titus, père de mon existence. Rome se souviendra combien je suis fier de toi et de tes dons, et lorsqu'il m'arrivera d'oublier jamais le moindre de tes inappréciables services, Romains, oubliez aussi vos serments de fidélité envers moi.

*[Titus turns to Tamara.]*

TITUS.

Այժմ, թագուհի, գերին էք կայսրի, Յարգելով նա ձեր դիրքն ու պատիւը՝ Ձեզ ու ձերոնց հետ կը վարուի, անշուշտ, խիստ ազնուաբար։

Maintenant, madame, vous êtes la prisonnière de l'empereur; de celui qui, en considération de votre rang et de votre mérite, vous traitera avec noblesse, ainsi que votre suite.

SATURNINUS.

[Aside.] Օ՛ գեղեցիկ կին, հաւատա դու ինձ, Ես քեզ կ'ընտրէի, թէ կարենայի վերստին ընտրել։ [Aloud.] Չքնաղ թագուհի, ցրիր քո դէմքի ամպերը մռայլ, Թէեւ պատերազմի պատահմունքն երկնեց փոփոխութիւնը այս ուրախութեան, Բայց քեզ Հռոմում չեն խայտառակի Եւ ամէնուրեք քեզ կը ճանաչեն որպէս թագուհի, Դու ինձ հաւատա, մի՛ թողնիր երբեք, Որ ահաբեկի դժգոհութիւնդ յոյսերդ բոլոր։ Տիրուհի, ով քեզ մխիթարում է, նա է՛լ աւելին Քեզ կը դարձնի, քան թէ գոթերի հպարտ թագուհի։ Լաւինիան, արդեօք չի՞ վիրաւորւում իմ այս բառերից։

[Aside.] Une belle princesse, assurément, et du teint dont je voudrais choisir mon épouse, si mon choix était encore à faire. [Aloud.] Belle reine, chassez ces nuages de votre front; quoique les hasards de la guerre vous aient fait subir ce changement de fortune, vous ne venez point pour être méprisée dans Rome; partout vous serez traitée en reine. Reposez-vous sur ma parole; et que l'abattement n'éteigne pas toutes vos espérances. Madame, celui qui vous console peut vous faire plus grande que n'est la reine des Goths. Lavinia, ceci ne vous déplaît pas?

LAVINIA.

Օ՜ երբեք, տէ՛ր իմ, քո ազնուութիւնն ինձ հաւաստում է, Որ այս բառերը լոկ արքայական պատշաճութիւն են։

Moi, seigneur? Non. Vos nobles intentions me garantissent que ces paroles sont une courtoisie royale.

SATURNINUS.

Շնորհակալութիւն, քնքուշ Լաւինիա։ Հռոմէացինե՛ր, Առանց փրկագնի մենք ազատում ենք մեր գերիներին, Թող շեփորները ու թմբուկները մեր փառքն հռչակեն։

Je vous rends grâces, aimable Lavinia. Romains, sortons; nous rendons ici la liberté à nos prisonniers sans aucune rançon; vous, seigneur, faites proclamer notre élection au son des tambours et des trompettes.

*[Bassianus grabs Lavinia.]*

BASSIANUS.

Ձեր թոյլտուութեամբ, բարեգութ Տիտոս, այս աղջիկն ի՛մն է։

Seigneur Titus, avec votre permission, cette jeune fille est à moi.

TITUS.

Ի՞նչ, արքայորդի, դու լո՞ւրջ ես ասում։

Comment? Seigneur, agissez-vous sérieusement, seigneur?

BASSIANUS.

Ճիշտ այդպէս, Տիտոս, ես պէտք է ցոյց տամ Իմ իրաւունքը ու նպատակը։

Oui, noble Titus, et je suis résolu de me faire justice à moi-même, et de réclamer mes droits.

MARCUS.

«*Ամէն մէկն իրենը*» կայ հռոմէական օրէնքների մէջ, Եւ արքայորդին իր իրաւունքով վերցնում է այն։

*"Chacun son droit."* est le droit de notre justice romaine; ce prince en use et ne reprend que son bien.

LUCIUS.

Եւ նա կը վերցնի, քանի դեռ ես կամ։

Et il en restera le possesseur, tant que Lucius vivra.

TITUS.

Օ՜ դաւաճաննե՛ր։ Որտե՞ղ է կայսրի պահակազօրը։ Դաւաճանութի՛ւն։ Յափշտակում են իմ Լաւինիային։

Traîtres, loin de moi. Où est la garde de l'empereur? Trahison, seigneur! Lavinia est ravie.

SATURNINUS.

Յափշտակո՞ւմ են, ո՞վ է յանդգնում։

Ravie? par qui?

BASSIANUS.
Ով իրաւունքով Կարող Է խլել իր հարսնացուին ամբողջ աշխարհից։
Par celui qui peut avec justice enlever au monde entier sa fiancée.

*[Bassianus, Marcus and Lavinia all exit.]*

MUTIUS.
Եղբայրնե՛ր, օգնէք, որ Լաւինիային տանի այստեղից, Իսկ ես իմ սրով կը պահեմ դուռը։
Mes frères, aidez à la conduire hors de cette enceinte; et moi, avec mon épée, je me charge de garder cette porte.

*[Lucius, Quintus and Martius exit while Titus turns to Saturninus.]*

TITUS.
Ինձ հետեւեցէք, շուտով աղջկաս ես ետ կը բերեմ։
Suivez-moi, seigneur, et bientôt je la ramènerai dans vos bras.

MUTIUS.
Հա՛յր իմ, այստեղից չեմ թողնի անցնես։
Seigneur, vous ne passerez point cette porte.

TITUS.
Անպատկա՛ռ տղա՛յ, Դո՞ւ ես Հռոմում իմ ճամփան փակում։
Quoi, traître, tu me fermeras le chemin à Rome!

*[Stabs Mutius.]*

MUTIUS.
Օգնի՛ր ինձ, Լուցիոս։
Au secours, Lucius, au secours?

*[Mutius dies as Lucius re-enters.]*

LUCIUS.
Հայր, աւելին ես, քան մի նողկալի անարդարութիւն, Անիրաւ վէճում դու սպանեցիր քո անմեղ որդուն։
Seigneur, vous êtes injuste, et plus que cela; vous avez tué votre fils dans une querelle mal fondée.

TITUS.
Ո՛չ դու, ո՛չ էլ նա իմ որդիքը չէք։ Իմ որդիները երբեք ինձ այսպէս չէին անարգի։ Դաւաճան, ետ տուր քրոջդ կայսրին։
Ni toi, ni lui, vous n'êtes plus mes fils: mes fils n'auraient jamais voulu me déshonorer. Traître, rends Lavinia à l'empereur.

*[Saturninus, Tamora, Demetrius, Chiron and Aaron all exit only to reappear up stage.]*

LUCIUS.

Մեռած ես նրան կը վերադարձնեմ, եթէ ուզում ես։ Բայց նա չի դառնայ նրա կինն երբեք, Քանզի օրէնքով նա պատկանում է խօսք տուած սիրուն։

Morte, si vous le voulez; mais non pas pour être son épouse, puisqu'elle est légitimement promise à la tendresse d'un autre.

SATURNINUS.

Ո՛չ, Տիտոս, կայսրը ո՛չ քո, ո՛չ նրա, Ո՛չ էլ քո տոհմից որեւէ մէկի կարիքն է զգում։ Պարապ ժամանակ գուցէ հաւատամ ես այն յիմարին, Որ կը յանդգնի ինձ մի պահ հեգնել, Քեզ՝ Տիտոս, երբեք, Ոչ էլ դաւաճան ու ամբարտաւան քո տղաներին, Որ դաշնակցել էք՝ այսպէս նենգօրէն ինձ անարգելու։ Միթէ՞ Հռոմում ինձանից բացի ուրիշ մարդ չկար, Որ ձեր ծաղրանքի առարկան դառնար. Քո արարքները դաշինք են կնքել քո գոռոզամիտ հպարտութեան հետ, Կարծես քո ձեռքից աղերսում էի իշխանութիւնը։

Non, Titus, non. L'empereur n'a pas besoin d'elle; ni d'elle, ni de toi, ni d'aucun de ta race; il me faut du temps pour me fier à celui qui m'a joué une fois; jamais tu n'auras ma confiance, ni toi, ni tes fils perfides et insolents, tous ligués ensemble pour me déshonorer. N'y avait-il donc dans Rome que Saturninus, dont tu pusses faire l'objet de tes insultes? Cette conduite, Andronicus, cadre bien avec tes insolentes vanteries lorsque tu dis que j'ai mendié l'empire de tes mains.

TITUS.

Ինչ հրէշային, ինչ նախատալից բառեր եմ լսում։

O c'est monstrueux! quels sont ces reproches?

SATURNINUS.

Բայց գնա, Տիտոս, գնա քո ճամփով եւ տուր քո յիմար Աղջկան նրան, ով նրա համար սուր է շողացնում։ Քո քաջ փեսայից դու գոհ կը մնաս, Քանզի կարող է խօսքը մէկ անել քո ապօրինի որդիների հետ Եւ խառնակութիւն գցել Հռոմում։

Poursuis; va, cède cette créature volage à celui qui brandit pour elle son épée, tu auras un vaillant gendre, un homme bien fait pour se quereller avec tes fils déréglés et pour exciter des tumultes dans la république de Rome.

TITUS.

Այս բառերն ասես դաշոյններ լինեն վիրաւոր սրտիս։

Ces paroles sont autant de rasoirs pour mon coeur blessé.

SATURNINUS.

Չքնա՛ղ Տամորա, Դու, որ Հռոմի բարեդեմ կանանց մթագնում ես, Ինչպէս Ֆեբուսը՝ իր գեղեցկափայլ դիցուհիներին, Եթէ գոհ մնաս իմ յանկարծակի այս ընտրութիւնից, Քեզ կը հռչակեմ Հռոմի կայսրուհի։ Ասա՛, գոթերի հպարտ թագուհի, Քեզ դո՞ւր է գալիս իմ ընտրութիւնը։ Երդւում եմ այստեղ մեր աստուածներով, Սրբազան տաճարն ու սուրբ ջրերը մօտիկ են այնքան, Եւ մոմերն այնքան պայծառ են վառւում, Եւ

ամենայն ինչ պատրաստ է արդէն Պատանի աստծուն, Որ չեմ ողջունի փողոցներն Հռոմի Ու ես չեմ մտնի իմ պալատն երբեք, Մինչեւ այստեղից չտանեմ ինձ հետ իմ հարսնացուին։
Et vous, aimable Tamora, reine des Goths, qui surpassez en beauté les plus belles dames romaines, comme Diane au milieu de ses nymphes, si vous agréez ce choix soudain que je fais, dans l'instant même, Tamora, je vous choisis pour épouse, et je veux vous créer impératrice de Rome. Parlez, reine des Goths, applaudissez-vous à mon choix? Et je le jure ici par tous les dieux de Rome, puisque le pontife et l'eau sacrée sont si près de nous, que ces flambeaux sont allumés, et que tout est préparé pour l'hyménée, je ne reverrai point les rues de Rome, ni ne monterai à mon palais, que je n'emmène avec moi de ce lieu mon épouse.

TAMORA.
Այստեղ՝ երկնքի հայեացքի ներքոյ, երդւում եմ Հռոմին, Եթէ գոթերի դժբախտ թագուհուն կայսրը բարձրացնի, Ապա ես նրա ցանկութիւնների գերին կը դառնամ, Կը դառնամ դայակն ու մայրը նրա պատանեկութեան։
Et ici, à la vue du ciel, je jure à Rome, que si Saturninus élève à cet honneur la reine des Goths, elle sera l'humble servante, la tendre nourrice et la mère de sa jeunesse.

SATURNINUS.
Դէպի ՊանթէոՆ, չքնաղ թագուհիի։ Ազնի՛ւ պատրիկներ, Ուղեկցէք կայսրին ու նրա սիրուն այս հարսնացուին. Ինձ աստուածներն են պարգեւել նրան, Իմաստութիւնը նուաճեց նրա երջանկութիւնը։ Այնտեղ մենք պէտք է մեր ամուսնական ծէսը կատարենք։
Montez, belle reine, au Panthéon. Seigneurs, accompagnez votre illustre empereur, et sa charmante épouse, envoyée par le ciel au prince Saturninus, dont la sagesse répare l'injustice de sa fortune: là, nous accomplirons les cérémonies de notre hymen.

*[All exit save Titus.]*

TITUS.
Չեն կանչում, Տիտոս, որ դու ուղեկցես այս հարսնացուին։ Ե՞րբ ես դու եղել այսպէ՛ս միայնակ, այսպէ՛ս անարգուած եւ այսպէ՛ս դժբախտ։
Je ne suis pas invité à suivre cette mariée. Titus, quand donc t'es-tu jamais vu ainsi seul, déshonoré, et provoqué par mille affronts?

*[Marcos, Lucius, Quintus and Marcius re-enter.]*

MARCUS.
Օ՜ նայի՛ր, Տիտոս, թէ ինչ ես արել, Անիրաւ վէճից դու սպանեցիր քո անմեղ որդուն։
Ah! vois, Titus, vois, vois ce que tu as fait; tuer un fils vertueux dans une injuste querelle!

TITUS.
Ո՛չ, յիմար տրիբուն, նա իմ որդին չէ, Եւ դու, եւ նրանք, որ մեղսակից էք այդ կեղտոտ գործին, Խայտառակեցիք մեր ամբողջ տոհմին։ Անարժան եղբայր, անարժան որդիք։

Non, tribun insensé, non; il n'est point mon fils, ni toi, ni ces hommes complices de l'attentat qui a déshonoré toute notre famille. Indigne frère! indignes enfants!

LUCIUS.

Բայց թող Մուցիոսին մենք թաղենք պատուով, Մեր եղբայրների կողքին թող պառկի։

Mais accordez-lui du moins la sépulture convenable, donnez à Mutius une place dans le tombeau de nos frères.

TITUS.

Ե՛տ, դաւաճաննե՛ր։ Նա չի հանգչելու այս դամբարանում։ Հինգ հարիւր տարի կանգնած է այստեղ այս դամբարանը, Ես եմ նորոգել նրա հինաւուրց շքեղութիւնը։ Այստեղ Հռոմի քաջ զինուորներն են հանգչում մեծ փառքով եւ ոչ թէ նրանք, ովքեր սատկում են խայտառակ մահով։ Որտեղ ուզում էք, դուք թաղէք նրան, սակայն ոչ այստեղ։

Traîtres, écartez-vous: il ne reposera point dans cette tombe. Ce monument subsiste depuis cinq siècles, je l'ai reconstruit avec magnificence: ici ne reposent avec gloire que les guerriers, et les serviteurs de Rome; il n'y a point de place pour celui qui a été tué dans une querelle honteuse! Allez l'ensevelir où vous pourrez, il n'entrera pas ici.

MARCUS.

Եղբայր, ինչպիսի՜ անաստուածութիւն. Իմ եղբօրորդու արարքը ճիշտ իր օգտին է խօսում, Նա պէտք է թաղուի եղբայրների մօտ։

Mon frère, c'est en vous une impiété; les exploits de mon neveu Mutius parlent en sa faveur; il doit être enseveli avec ses frères.

QUINTUS and MARTIUS.

Այստեղ կը թաղենք կամ թէ մենք նրա հետքով կը գնանք։

Il le sera, ou nous le suivrons.

TITUS.

Այդ ո՞ր սրիկան ասաց՝ կը թաղենք։

Il le sera, dites-vous? Quel est l'insolent qui a proféré ce mot?

QUINTUS.

Նա, ով ամէնուր այդ կը հաստատի։

Celui qui le soutiendrait en tout autre lieu que celui-ci.

TITUS.

Ինչպէ՞ս, թաղում էք կամքիս հակառա՞կ։

Quoi! voudriez-vous l'y ensevelir malgré moi?

MARCUS.

Ո՛չ, ազնիւ Տիտոս, աղերսում ենք քեզ, Որ ներես որդուդ եւ այստեղ թաղես։

Non, noble Titus, mais nous te supplions de pardonner à Mutius, et de lui accorder la sépulture.

TITUS.
Չէ՞ որ դու, Մարկոս, փորձեցիր խփել իմ սաղաւարտին Եւ վիրաւորել իմ պատիւն այստեղ տղաների հետ, Ձեզնից ամէն մէկն իմ թշնամին է, Ինձ հանգիստ թողէք, կորէ՛ք իմ աչքից։
Marcus, c'est toi-même qui as abattu mon cimier, c'est toi qui, avec ces enfants, as blessé mon honneur: je vous tiens tous pour mes ennemis: ne m'importunez plus davantage, mais allez-vous-en.

LUCIUS.
Նա արդէն իրեն չի տիրապետում, լաւ է՝ հեռանանք։
Il est hors de lui. Retirons-nous.

QUINTUS.
Ո՛չ, չեմ հեռանայ, մինչեւ Մուցիոսին չթաղեմ այստեղ։
Moi, non, jusqu'à ce que les ossements de Mutius soient ensevelis.

*[Titus' children kneel.]*

MARCUS.
Եղբա՛յր, բնութիւնն ինքն է աղերսում նրա անունով։
Mon frère, la nature parle dans ce titre.

QUINTUS.
Հայր իմ, բնութիւնն այս սուրբ անունով խօսում է քեզ հետ։
Mon père, la nature parle dans ce nom.

TITUS.
Ոչ մի բառ, թէ ոչ՝ դուք կը պատժուէք աւելի խստիւ։
Ne me parlez plus, si vous tenez à votre bonheur.

MARCUS.
Անուանի Տիտոս, դու աւելին ես, քան հոգուս կէսը։
Illustre Titus, toi qui es plus que la moitié de mon âme.

LUCIUS.
Սիրելի հայր իմ, դու, որ բոլորիս շունչն ու հոգին ես։
Mon bon père, l'âme et la vie de nous tous.

MARCUS.
Տիտոս, այստեղ՝ առաքինութեան ապաստարանում, Թաղեմ ազնուազարմ իմ եղբօրորդուն, Ով յանուն քրոջ, իր պատուի մեռաւ։ Դու հռոմէացի ես, ոչ թէ բարբարոս, Յիշիր, թէ ինչպէս յոյներն Այաքսին

յանձնեցին հողին, Նա բախտից դժգոհ՝ անձնասպան եղաւ, Եւ Ոդիսեւսի որդին իմաստուն Գթասիրաբար աղօթք էր անում, որ թաղեն նրան։ Պատանի Մուցիոսն ուրախութիւնդ էր, Ուրեմն, հայր իմ, դու մի՛ արգելիր նրա մուտքն այստեղ։

Permets que ton frère Marcus enterre ici dans l'asile de la vertu son noble neveu, qui est mort dans la cause de l'honneur et de Lavinia: tu es Romain, ne sois donc pas barbare. Les Grecs, mieux conseillés, consentirent à ensevelir Ajax, qui s'était tué lui-même, et le sage fils de Laërte plaida éloquemment pour ses funérailles: ne refuse donc pas l'entrée de ce tombeau au jeune Mutius qui faisait ta joie.

TITUS.

Բարձրացիր, Մարկոս, Այսպիսի սեւ օր չեմ տեսել երբեք, Իմ որդիներով խայտառակուեցի այստեղ՝ Հռոմում։ Լաւ, թաղէք նրան, յաջորդն ինձ թաղէք։

Lève-toi, Marcus, lève-toi. Le plus triste jour que j'aie vu jamais, c'est celui-ci; être déshonoré par mes enfants à Rome! Allons, ensevelissez-le, et moi après.

*[They place Mutius in the tomb.]*

LUCIUS.

Սիրելի Մուցիոս, քո ոսկորները թող հանգչեն այստեղ, եղբայրներիդ հետ, Մինչ նոր աւարով մենք կը զարդարենք քո դամբարանը։

Cher Mutius, repose ici avec tes frères jusqu'à ce que nous venions orner ta tombe de trophées.

ALL.

Արցունք մի՛ թափէք Մուցիոսի համար, Նա մեռաւ յանուն առաքինութեան, ապրում է փառքով։

Que personne ne verse des larmes sur le noble Mutius: celui-là vit dans la renommée qui mourut pour la cause de la vertu.

MARCUS.

Եղբայր, որպէսզի մի քիչ փարատենք մեր վիշտն ահաւոր։ Ասա, գոթերի այս նենգ թագուհուն Ինչպէ՞ս յաջողուեց անսպասելի բարձրանալ Հռոմում։

Mon frère, pour faire diversion à ce mortel chagrin, dis-moi comment il arrive que la rusée reine des Goths se trouve soudain la souveraine de Rome?

TITUS.

Չգիտեմ, Մարկոս, ոչինչ չգիտեմ, բայց դա այդպէս է։ Խորամանկութեա՞մբ բարձրացաւ, թէ ոչ՝ յայտնի է աստծուն, Միթէ՞ այն մարդուն պարտական չէ նա, Ով հեռուից բերեց նրան այսպիսի բարձրագոյն դիրքի։

Je l'ignore, Marcus; mais je sais que cela est. Si c'était prémédité ou non, le ciel peut le dire; mais n'a-t-elle donc pas des obligations à l'homme qui l'a amenée de si loin pour monter ici à cette fortune suprême?

MARCUS.

Այո՛, եւ նա էլ կը վարձատրի նրան ազնուօրէն։

Oui, et elle le récompensera généreusement.

*[Emperor, Tamora, her sons and Aaron all enter through one door while Bassianus and Lavinia enter through another.]*

SATURNINUS.

Այսպէս, Բասիանոս, դու խաղը տարար, Աստուած տայ, տէր իմ, քեզ ուրախութիւն քո հարսնացուից։

Ainsi, Bassianus, vous tenez votre conquête; que le ciel vous rende heureux avec votre belle épouse!

BASSIANUS.

Եւ քեզ էլ՝ քոնից։ Ես քեզ չեմ ասում ոչինչ աւելի Կամ ոչինչ պակաս քեզ չեմ կամենում։

Et vous, avec la vôtre, seigneur; je n'en dis pas davantage, et ne vous en souhaite pas moins; et je vous fais mes adieux.

SATURNINUS.

Լսիր, դաւաճան, եթէ Հռոմը օրէնքներ ունի, Մենք՝ իշխանութիւն, դու պիտի զղջաս Ընկերներիդ հետ այս յափշտակած աղջկայ համար։

Traître, si Rome a des lois ou nous quelque pouvoir, toi et ta faction vous vous repentirez de ce rapt.

BASSIANUS.

Յափշտակութի՞ւն, ասում ես, տէր իմ, Երբ իմն եմ առնում, իմ հարսնացուին, այժմ կնոջն իմ, Բայց թող Հռոմի արդար օրէնքներն ամէն ինչ վճռեն, Առայժմ ես իմ հասանելիքն եմ քեզնից վերցնում։

Appelez-vous un rapt, seigneur, de prendre mon bien, celle qui fut ma fiancée fidèle et qui est à présent ma femme? Mais que les lois de Rome en décident; en attendant, je suis possesseur de ce qui est à moi.

SATURNINUS.

Շատ բարի, իշխան։ Մեզ հետ խօսում ես շատ կարճ ու կտրուկ։ Բայց, եթէ ապրենք, մենք էլ կը խօսենք քեզ հետ կարճ կտրուկ։

Fort bien, fort bien, vous êtes bref, seigneur, mais si nous vivons, je serai aussi tranchant avec vous.

BASSIANUS.

Ինչ որ արել եմ, ես դրա համար Լաւագոյն ձեւով պատասխան կը տամ, Հարկ եղած դէպքում՝ իմ կեանքի գնով։ Բայց, ողորմած տէր, Հռոմի հանդէպ Բասիանոսն ունի պարտականութիւն՝ Չի կարող չասել՝ պատիւն անարգուեց։ Ջանալով ետ տալ իր աղջկան քեզ՝ բարի Տիտոսը Սեփական ձեռքով ամենակրտսեր որդուն սպանեց՝ Քեզ ծառայելով, նրան տանջում է այն զայրոյթն ահեղ, Որ իր պարգեւը յափշտակում են քեզնից հեշտութեամբ։ Վերադարձրո՛ւ, կա՛յսր, քո գթութիւնը այս ազնիւ մարդուն, Տիտոսն իր բոլոր արարքների մէջ Երեւացել է հայր ու բարեկամ քեզ ու Հռոմին։

Seigneur, je dois répondre de ce que j'ai fait, du mieux que je pourrai, et j'en répondrai sur ma tête. Je n'ai plus qu'une chose à faire savoir à Votre Majesté; par tous les devoirs que j'ai envers Rome, ce noble seigneur, Titus que voilà ici, est outragé dans l'opinion d'autrui et dans son honneur; lui qui, pour vous rendre Lavinia, a tué de sa propre main son plus jeune fils par zèle pour vous, et enflammé de colère de se voir traversé dans le don qu'il avait franchement fait. Rendez-lui donc vos bonnes grâces, Saturninus, à lui, qui s'est montré dans toutes ses actions le père et l'ami de Rome et de vous.

## TITUS.

Դու, արքայորդի, ինձ մի՛ պաշտպանիր, Դու այս մարդկանց հետ ինձ անպատուեցիր։ Թող դատեն Հռոմն ու երկինքը արդար, Թէ ես ինչպէս եմ սիրել-մեծարել Սատուրնինոսին։

Prince Bassianus, laisse-moi le soin de rappeler mes actions. C'est toi, et mes fils qui m'avez déshonoré. Que Rome et le juste ciel soient mes juges, et disent combien j'ai chéri et honoré Saturninus.

## TAMORA.

Պատուաւոր տէր իմ, եթէ երբեւէ ազնիւ Տամորան Քո արքայական աչքն է զարդարել, Ուրեմն, լսիր, թէ ինչ եմ ասում անաչառութեամբ. Ներիր, խնդրում եմ, ինչ որ եղել է։

Mon digne souverain, si jamais Tamora a pu plaire aux yeux de Votre Majesté, daignez m'entendre parler avec impartialité pour tous, et à ma prière, cher époux, pardonnez le passé.

## SATURNINUS.

Ի՞նչ։ Խայտառակուել բոլորի առաջ Եւ նուաստաբար տանել անարգանքն առանց վրէժի՞։

Quoi, madame, me voir déshonoré publiquement, et le souffrir lâchement sans en tirer vengeance!

## TAMORA.

Այդպէս չէ, տէր իմ, Հռոմի աստուածներն երբեք չեն թողնի, Որ պատճառ դառնամ քո անպատուութեան, Բայց յանդգնում եմ երդուել իմ պատուով, Որ բարի Տիտոսն երբեք մեղք չունի, Ում բարութիւնը չի ծածկում բնաւ նրա վշտերը։ Աղաչու՛մ եմ քեզ, գթասիրաբար նայիր դու նրան, Թող չկորցնի մի փուչ կասկածը մի լաւ բարեկամ, Մի՛ վշտացնի դառն հայեացքով նրա սիրտն ազնիւ։ Առանձին՝ Սատուրնինոսին։ Տէր իմ, լսիր ինձ, ներիր դու նրան, Դու կեղծ ժպիտով ծածկիր քո վիշտը, քո դժգոհութիւնը։ Չէ՞ որ դեռ նոր ես դու գահ բարձրացել, Գուցէ ժողովուրդն ու պատրիկները, արդար դատելով, Նրա կողմն անցնեն ու քեզ, սիրելիս, գահընկէց անեն, Ապերախտութիւնն Հռոմը, գիտցիր, պէտք է համարէ սոսկալի յանցանք։ Թող որ ե՛ս գտնեմ նրանց բոլորի օրն սպանելու Եւ բնաջնջեմ նրա ողջ տոհմը, կողմնակիցներին, Անողորմ հօրը, նրա դաւաճան խենթ տղաներին, Որոնց խնդրեցի սիրելի որդուս կեանքը ինձ բաշխել։ Նրանք կ'իմանան, թէ ինչ ասել է թագուհուն ծնկի բերել փողոցում Եւ իզուր հայցել գթասիրութիւն։ [To Saturninus.] Բա՛ւ է, սիրելիս, բա՛ւ է, Անդրոնիկոս, Տէր իմ, բարձրացրու այս բարի մարդուն Եւ ուրախացրու ծերունու սիրտը, Որ մեռնում է քո խոժոռ հայեացքի փոթորիկի մէջ։

Non pas, seigneur; que les dieux de Rome me préservent d'être jamais l'auteur de votre déshonneur. Mais, sur mon honneur, j'ose protester de l'innocence du brave Titus dans ce qui s'est passé; et sa fureur, qu'il n'a pas dissimulée, atteste son chagrin. Daignez donc, à ma prière, le regarder d'un oeil favorable: ne perdez pas, sur un soupçon injuste, un si noble ami, et n'affligez pas de vos regards irrités son coeur généreux. Seigneur, laissez-vous guider par moi, laissez-vous gagner: dissimulez tous vos chagrins et vos ressentiments; vous n'êtes que depuis un moment placé sur le trône; craignez que le peuple et les patriciens aussi, après un examen approfondi, ne prennent le parti de Titus, et ne nous renversent, en nous accusant d'ingratitude, ce que Rome tient pour un crime odieux. Cédez à leurs prières, et laissez-moi faire. Je trouverai un jour pour les massacrer tous, pour effacer de la terre leur faction et leur famille, ce père cruel et ses perfides enfants, à qui j'ai demandé en vain la vie de mon fils chéri; je leur ferai connaître ce qu'il en coûte pour laisser une reine s'agenouiller dans les rues, et demander grâce en vain. [To Saturninus.] Allons, allons, mon cher empereur. Approchez, Andronicus. Saturninus, relevez ce bon vieillard, et consolez son coeur, accablé sous les

menaces de votre front courroucé.

SATURNINUS.
Բարձրացի՛ր, Տիտոս, իմ կայսրուհին համոզում է ինձ:
Levez-vous, Titus, levez-vous, mon impératrice a triomphé.

TITUS.
Շնորհակալությ՛ուն, ձերդ մեծություն, եւ ձեզ, կայսրուհի, Այս հայեացքները եւ այս բառերը ինձ կեանք են տալիս:
Je rends grâces à Votre Majesté, et à elle, seigneur. Ces paroles et ces regards me redonnent la vie.

TAMORA.
Տիտո՛ս, Հռոմին ազգական դարձայ, Բախտն ինձ ընդունեց որպէս հռոմէացի, Ես պէտք է բարի խորհուրդ տամ կայսրին, Այսօր մեռնում են բոլոր վէճերը, բարի՛ իմ Տիտոս, Թոյլ տուր հպարտանալ, իմ բարի՛ կայսր, որ քեզ հաշտեցրի ընկերներիդ հետ: Գալով քեզ, Բասիանոս, ես խոստացել եմ կայսրին բարեգութ, Որ դու կը լինես աւելի խոնարհ ու հեզաբարոյ: Մի՛ վախենաք դուք, ջահէլ պատրիկներ, եւ դու Լաւինիա, Լսէք խորհուրդն իմ, ծունր իջէք խոնարհ Եւ ներում խնդրէք կայսրից վեհափառ: Մարկոսը, Լաւինիան ու Տիտոսի տղաները ծունր են իջնում:
Titus, je suis incorporée à Rome; je suis maintenant devenue Romaine par une heureuse adoption, et je dois conseiller l'empereur pour son bien. Toutes les querelles expirent en ce jour, Andronicus. Et que j'aie l'honneur, mon cher empereur, de vous avoir réconcilié avec vos amis.--Quant à vous, prince Bassianus, j'ai donné ma parole à l'empereur que vous seriez plus doux et plus traitable. Ne craignez rien, seigneur; et vous aussi, Lavinia: guidés par mon conseil, vous allez tous, humblement à genoux, demander pardon à Sa Majesté.

LUCIUS.
Ներում ենք խնդրում եւ երդւում աստծուն ու կայսրին բարի, Որ մենք գործել ենք կարելոյն չափ հեզ` Պաշտպան կանգնելով մեր ու մեր քրոջ պատուին անբասիր:
Nous l'implorons, et nous prenons le ciel et Sa Majesté à témoin, que nous avons agi avec toute la modération qui nous a été possible, en défendant l'honneur de notre soeur et le nôtre.

MARCUS.
Ես հաստատում եմ այս բանն իմ պատւով:
J'atteste la même chose sur mon honneur.

SATURNINUS.
Կորէ՛ք այստեղից եւ մեզ այլեւս մի՛ ձանձրացրէք:
Retirez-vous, et ne me parlez plus; ne m'importunez plus.

TAMORA.
Ո՛չ, ո՛չ, բարի կայսր, մենք պէտք է լինենք նրանց բարեկամ, Նրանք ծունր իջած ներում են խնդրում, Միթէ՞, սիրելիս, ինձ պէտք է մերժես, ետ նայիր նրանց:

Non, non, généreux empereur. Il faut que nous soyons tous amis. Le tribun et ses neveux vous demandent grâce à genoux; vous ne refuserez pas, cher époux, ramenez vos regards sur eux.

SATURNINUS.
Մարկոս, քո սիրոյ, քո եղբօր համար Եւ Տամօրայի թախանձանքներին ընդառաջ գալով՝ Ներում եմ այստեղ այս ջահէլ մարդկանց մեղքերն ատելի։ Բարձրանում են։ Լաւինիա, թէեւ դու ինձ լքեցիր գեղջկուհու նման, Բայց նայիր, գտայ ես մի բարեկամ, Հաւատարմութեան երդում տուեցի մահի պէս ստոյգ, Որ ես տաճարից երբեք դուրս չեմ գայ որպէս ամուրի։ Գնանք, եւ եթէ պալատը կայսրի Կարող է օրհնել երկու հարսանիք, Ուրեմն, Լաւինիա, դու իմ հիւրն ես քո բարեկամներով։ [To Tamora.] Եւ թող այս օրը կոչուի սիրոյ օր։
Marcus, à ta considération, à celle de ton frère Titus, et cédant aux sollicitations de Tamora, je pardonne à ces jeunes gens leurs attentats odieux. Levez-vous, Lavinia, quoique vous m'ayez abandonné comme un rustre. J'ai trouvé une amie; et j'ai juré par la mort, que je ne quitterais pas le prêtre sans être marié. Venez: si la cour de l'empereur peut fêter deux mariées, vous serez ma convive, Lavinia, vous et vos amis. [To Tamora.] Ce jour sera tout entier à l'amour.

TITUS.
Իսկ վաղը, եթէ հաճոյ է կայսրին ինձ հետ եղջերու եւ յովազ որսալ, մեզ կ'արթնացնեն եղջերափողը եւ շան հաչոցը։
Demain, si c'est le bon plaisir de Votre Majesté, que nous chassions la panthère et le cerf ensemble, nous irons donner à Votre Majesté le bonjour avec les cors et les meutes.

SATURNINUS.
Թող այդպէս լինի, բարեգութ Տիտոս, շնորհակալութի՛ւն։
Volontiers, Titus; et je vous en remercie.

*[All exit.]*

]0[

ACT II. SCENE I.
Rome. Before the palace. Aaron enters.

AARON.
Հասաւ Տամօրան Ոլիմպոս լեռան բարձր կատարին, Որտեղ չեն հասնում ճակատագրի հարուածները բիրտ, Եւ նա, պաշտպանուած շանթ ու որոտից, Բնաւ չի զգում գունատ նախանձի սպառնալիքը։ Այժմ Տամօրան ասես թէ լինի ոսկեայ արեգակ, Որ լուսաբացն է ողջունում զուարթ, Եւ ծովի ջրերն ոսկեզօծելով՝ Զոդիակոսով թռչում է փայլուն կառքի մէջ նստած՝ Վերից նայելով բարձր լեռներին։ Փառքերն երկրային քծնում են նրան, Եւ խոնարհւում է առաքինութիւնն այդ կնոջ առաջ Ու դողում, երբ նա յօնքերն է կիտում։ Զինիր քո սիրտը, քո միտքն, Ահարոն, Որ արքայական քո սիրուհու հետ յաւէրժ բարձրանաս, Բարձրանաս նրա զօրաւոր դիրքին, Ում երկարատեւ դու շղթայել ես սիրոյ կապանքով, Ով քո հմայիչ աչքերին գամուեց աւելի ամուր, Քան Պրոմեթէոսը՝ ժայռին Կովկասի։ Հեռացէք ինձնից, ստրկամիտ խոհեր, ստրկական զգեստ, Ուզում եմ շողալ մարգարիտների ու ոսկու փայլով Եւ լինել ծառան այս նոր կայսրուհու։ Ասացի՝

ծառա՞յ։ Ո՜չ, հաճոյք զգալ այս թագուհու հետ, Այս աստուածուհու, այս Շամիրամի, այս դիցուհու հետ, Այս սիրենի հետ, որ կախարդում է Սատուրնինոսին, Եւ տեսնել Հռոմի ու նրա կայսեր կործանումն ահեղ։ Այս ի՞նչ աղմուկ է։

Maintenant Tamora monte au sommet de l'Olympe, loin de la portée des traits de la fortune: elle est assise là-haut à l'abri des feux de l'éclair, ou des éclats de la foudre; elle est au-dessus des atteintes menaçantes de la pâle Envie. Telle que le soleil, lorsqu'il salue l'aurore, et que dorant l'Océan de ses rayons il parcourt le zodiaque dans son char radieux, et voit au-dessous de lui la cime des monts les plus élevés, telle est aujourd'hui Tamora. Les grandeurs de la terre rendent hommage à son génie, et la vertu s'humilie et tremble à l'aspect sévère de son front. Allons, Aaron, arme ton coeur, et dispose tes pensées à s'élever avec ta royale maîtresse, pour parvenir à la même hauteur qu'elle: longtemps tu l'as traînée en triomphe sur tes pas, chargée des chaînes de l'amour; plus fortement attachée aux yeux séduisants d'Aaron, que ne l'était Prométhée aux rochers du Caucase. Loin de moi ces vêtements d'esclave, loin de moi les vaines pensées. Je veux briller et étinceler d'or et de perles, pour servir cette nouvelle impératrice; qu'ai-je dit, servir? pour m'enivrer de plaisir avec cette reine, cette déesse, cette Sémiramis; cette reine, cette sirène qui charmera le Saturninus de Rome, et verra son naufrage et celui de ses États. Qu'entends-je? quel est ce bruit?

*[Chiron and Demetrius enter, bickering.]*

## DEMETRIUS.

Երեխայ ես դու, խելքդ չի կտրում, Եւ խելքդ չունի սրամտութիւն, Որ խցկուես այնտեղ, Ուր բարեհաճ են վերաբերում ինձ Եւ, որքան գիտեմ, նոյնիսկ սիրում են։

Chiron, tu es trop jeune, ton esprit est trop novice et manque trop d'usage pour prétendre au coeur que je recherche, et qui peut, sans que tu le sache m'être dévoué.

## CHIRON.

Դու շատ վստահ ես ուժերիդ վրայ, Այստեղ էլ անգամ ուզում ես յաղթել ինձ պարծենալով։ Մէկ-երկու տարուայ տարբերութիւնը չի կարող դարձնել Քեզ խիստ երջանիկ, ինձ՝ նոյնքան դժբախտ։ Ես շնորհ ունեմ, ինչպէս նաեւ դու, Ծառայել սիրուն եւ. արժանանալ պարգեւին նրա, Եւ դա իմ սուրը քեզ կ'ապացուցի, Ոչ ոք չի կարող իմ Լաւինիային ինձանից խլել։

Démétrius, tu es trop présomptueux en tout, et surtout en prétendant m'accabler par tes forfanteries: ce n'est pas la différence d'une année ou deux qui peut me rendre moins agréable et toi plus fortuné: j'ai tout ce qu'il faut, aussi bien que toi, pour servir ma maîtresse et mériter ses faveurs: et mon épée te le prouvera, et défendra mes droits à l'amour de Lavinia.

## AARON.

Մահակներ բերէք, սիրահարների մէջքն է քոր գալիս։

Des massues, des massues! Ces amoureux ne pourront pas se tenir en paix.

## DEMETRIUS.

Կաթնակեր լակոտ, գուցէ մեր մայրը անզգուշաբար Քո գօտուց կապեց մի սուր-խաղալիք, Եւ դու, այդ բանից խիստ կատաղելով, ահաբեկում ես բարեկամներիդ, Չքուիր այստեղից եւ քո խաղալիք սուրը պատեան դիր, Սպասիր, մինչեւ ձեռքդ վարժուի։

Faible enfant, parce que notre mère a imprudemment attaché à ton côté une épée de danseur, as-tu la téméraire insolence de menacer tes amis? Va clouer ta lame dans ton fourreau, jusqu'à ce que tu aies mieux appris à la manier.

CHIRON.
Մինչեւ վարժուելն էլ անվարժ ճարպկութեամբ Ես քեզ ցոյց կը տամ, թէ սուրը ինչպէս կարող եմ բռնել։
En attendant, avec le peu d'adresse que je puis avoir, tu vas connaître jusqu'où va mon courage.

DEMETRIUS.
Առի՞ւծ ես կտրել։
Ah! mon garçon, es-tu devenu si brave?

*[Chiron and Demetrius draw their swords. Aaron steps forward.]*

AARON.
Ի՞նչ է պատահել, արքայորդինե՛ր։ Դուք յանդգնում էք սուր բարձրացնել պալատի առաջ Եւ բացէիբաց վէճն այսպէ՞ս լուծել։ Ինձ քաջ յայտնի է ձեր թշնամութեան ամբողջ պատճառը. Թէկուզ մէկ միլիոն ոսկի ինձ տային, չէի ցանկանայ, Որ վէճի առիթն այն մարդն իմանար, Ում բոլորից շատ է դա վերաբերում, Եւ ամէնից շատ ձեր ազնիւ մայրը չէր ուզի տեսնել Ձեզ հռոմէական պալատի առաջ այսպէս խայտառակ։ Ամօ՛թ ձեզ, ամօ՛թ, զէնքը վար դրէք։
Eh bien! eh bien! seigneurs? Quoi! osez-vous tirer l'épée si près du palais de l'empereur, et soutenir ouvertement une pareille querelle? Je connais à merveille la source de cette animosité; je ne voudrais pas pour un million en or que la cause en fût connue de ceux qu'elle intéresse le plus; et, pour infiniment plus, que votre illustre mère fût ainsi déshonorée dans la cour de Rome. Ayez honte de vous-mêmes et remettez vos épées dans le fourreau.

DEMETRIUS.
Ո՛չ, ո՛չ, քանի դեռ Սուրս չի մխուել նրա կրծքի մէջ Եւ ներս չեմ հրել նրա կոկորդը Այս նախատալից բառերի կոյտը, Որով ինձ այստեղ նա վիրաւորեց։
Non pas, moi, que je n'aie enfoncé ma rapière dans son sein, et que je ne lui aie fait rentrer dans la gorge tous les insultants reproches qu'il a prononcés ici à mon déshonneur.

CHIRON.
Սպասում եմ քեզ, վախկո՛տ, պիղծ բերան, Դու որոտում ես քո լեզուով միայն Եւ դու երբեւէ չես կարողացել սուր բանեցնել։
Je suis tout prêt et déterminé. Lâche aux mauvais propos, qui tonnes avec la langue et n'oses rien accomplir avec ton arme!

AARON.
Կորէ՛ք, ասում եմ, Երդւում եմ բոլոր այն աստուածներով, Որոնց պաշտում են գոթերն ռազմասէր, Ձեզ կը կործանի այս դատարկ վէճը։ Արքայորդիներ, դուք չէ՞ք մտածում, Որ արքայազնի իրաւունքի դէմ Յանդգնութիւնը վտանգաւոր է։ Միթէ՞ Լաւինիան դարձել է այնքա՛ն ցոփ ու անառակ, Կամ Բասիանոսը՝ այնքա՛ն ցածրոգի, Որ դուք կարծում էք՝ նրա սիրոյ համար Կարող էք առանց վերակացութեան, առանց

վրէժի եւ առանց դատի այսպիսի անմիտ կռիւներ սարքել։ Զգո՜յշ, խի՜ստ զգոյշ, արքայորդինե՜ր, Եթէ կայսրուհին ձեր թշնամութեան պատճառն իմանայ, Նրան այս երգը բնաւ դուր չի դա։

Séparez-vous, vous dis-je. Par les dieux qu'adorent les Goths belliqueux, ce petit querelleur nous perdra tous. Comment! prince, ne savez-vous pas combien il est dangereux d'empiéter sur les droits d'un prince? Quoi, Lavinia est-elle donc devenue si abandonnée, ou Bassianus si dégénéré, que vous puissiez élever de semblables querelles pour l'amour de cette dame, sans contradiction, sans justice et sans vengeance? Jeunes gens, prenez garde. Si l'impératrice savait la cause de cette discorde, c'est une musique qui ne lui plairait pas.

CHIRON.

Թող մայրս ու ամբողջ աշխարհն իմանան, Որ այդ Լաւինիան թանկ է ինձ համար ամբողջ աշխարհից։

Je ne m'embarrasse guère qu'elle le sache, elle et le monde entier: j'aime Lavinia plus que le monde entier.

DEMETRIUS.

Կաթնակե՜ր, համեստ ընտրութիւն արա, Լաւինիան յոյսն է քո աւագ եղբօր։

Enfant, apprends à faire un choix plus humble: Lavinia est l'espérance de ton frère aîné.

AARON.

Գժուե՞լ էք, ինչ է, կամ դուք չգիտէ՞ք, Որ հռոմէացիք բուռն են եւ անզուսպ Եւ չեն հանդուրժում իրենց սիրոյ մէջ ոչ մի մրցակից, Դուք ձեր արարքով ձեզ համար մահի ճամփայ էք բացում։

Quoi! êtes-vous fous? Ne savez-vous pas combien ces Romains sont furieux et impatients, et qu'ils ne peuvent souffrir de rivaux dans leurs amours? Je vous le dis, princes, vous tramez vous-mêmes votre mort par ce dessein.

CHIRON.

Ես կը գրկէի մահին հազար անգամ, Միայն թէ նրան՝ սիրուս, տիրանամ։

Aaron, je donnerais mille morts pour jouir de celle que j'aime.

AARON.

Տիրանա՞ս, ինչպէ՞ս։

Pour jouir d'elle! hé! comment?

DEMETRIUS.

Դու զարմանո՞ւմ ես, Կին է՝ կարող ես ետեւից քարշ գալ, Կին է՝ կարող ես նրան տիրանալ, Լաւինիան կին է, ուրեմն, պէտք է դու նրան սիրես։ Ջրաղացի միջով շատ ջուր է հոսում, Քան թէ տեսնում է ջրաղացպանը։ Կտրուած հացից հեշտ է թռցնել մի փոքրիկ պատառ, Ի՞նչ փոյթ, Բասիանոսն եղբայրն է կայսրի, Նրանցից մեծերն են Վուլկանի զարդեր հեզութեամբ կրել։

Et qu'y a-t-il là de si étrange? C'est une femme, par conséquent elle peut être recherchée; c'est une femme, par conséquent elle peut être conquise; c'est Lavinia, par conséquent elle doit être aimée. Allez, allez; il passe plus d'eau par le moulin que n'en voit le meunier; et nous savons de reste qu'il est aisé d'enlever une tranche au pain entamé sans qu'il y paraisse. Quoique Bassianus soit le frère de l'empereur, des gens qui valaient mieux que lui ont porté les insignes de Vulcain.

AARON.
Այո՛, այնքան մեծ, որքան մեր կայսր Սատուրնինոսը։
Oui, des gens comme Saturninus pourraient bien les porter aussi.

DEMETRIUS.
Եւ ինչո՞ւ պէտք է մարդ յուսահատուի, Երբ գայթակղել գիտէ բառերով, հայեացքով քնքուշ։ Միթէ՞ չես խփել վայրի մի քարայծ եւ տարել որսը անտառապահի հէնց քթի տակից։
Pourquoi donc désespérerait-il du succès, celui qui sait faire sa cour par de douces paroles, de tendres regards, et de riches présents? Quoi, n'avez-vous pas souvent frappé une biche, et ne l'avez-vous pas enlevée proprement sous les yeux mêmes du garde?

AARON.
Ուրեմն պէտք է գործն առաջ տանել յափշտակութեամբ։
Allons, il paraît que quelque jouissance à la dérobée vous ferait grand plaisir.

CHIRON.
Ի հարկէ՛, եթէ որսը կրկնուի։
Oui, certes.

DEMETRIUS.
Ահարոն, դու ճիշտ խփեցիր նշանակէտին։
Aaron, tu as touché le but.

AARON.
Ես կ'ուզենայի, որ դուք էլ ինձ պէս խփէք անվրէպ Չէիք ձանձրացնի մեզ այս աղմուկով։ Լսէք, միթէ՞ դուք այնքան յիմար էք, Որ մի փուչ բանից վիճում էք այսպէս։ Դուք կը դժգոհէ՞ք, թէ ձեր երկուսի գործն յաջող գնայ։
Je voudrais que vous l'eussiez touché aussi. Nous ne serions plus fatigués de ce bruit. Eh bien, écoutez, écoutez-moi. Etes-vous donc assez fous pour vous quereller pour cela? Un moyen qui vous ferait réussir tous deux vous offenserait-il?

CHIRON.
Ես՝ ամենեւին։
Non pas moi, d'honneur.

DEMETRIUS.
Թէ որ երկուսից մէկը ես լինեմ։
Ni moi, pourvu que j'aie ma part.

AARON.
Ամօթ է, հաշտուէք, եւ թող ձեր վէճն էլ ձեզ միացնի, Խորամանկութեամբ ու հնարանքով դուք պէտք է

հասնէք Ձեր նպատակին, եւ դուք էլ պէտք է խնդիրը լուծէք։ Այն, ինչ չէք կարող ձեռք բերել կամքով, Պէտք է նուաճել հմտութեամբ միայն։ Գիտցէք, Լուկրեցիան երբեք չի եղել աւելի մաքուր, Քան Բասիանոսի սէրը՝ Լաւինիան։ Մենք պէտք է ընտրենք կարճ ճանապարհը, Եւ ոչ թէ տանջուենք յապաղումների դանդաղ ընթացքից։ Պատրաստուէք, գնանք փառաւոր որսի, Այնտեղ կը լինեն հռոմէացի գեղեցիկ կանայք, Անտառում թաքուն արահետներ կան, Կան խիստ ամայի, ծածուկ անկիւններ, Որ ստեղծել է մայր բնութիւնը յանցանքի համար։ Տարէք առանձին քնքուշ քարայծին խորքը անտառի, Եւ, եթէ խօսքով չէք կարող հասնել ձեր նպատակին, Դիմէք բռնութեան, սա է ձեր միակ ճանապարհն յոյսի։ Դէհ, գնանք, գնանք ու մեր կայսրուհուն, Որն իր սրբազան խելքն է նուիրել վրէժխնդրութեանն ու բռնութեանը, Պատմենք բոլորը, Նա կը փայլեցնի մեր քաջ սրերը իր խորհուրդներով, Չի թողնի, որ դուք կռուէք միմեանց հետ, Բայց ձեր երկուսիդ նա կը հասցնի իր ցանկութեանը։ Կայսրի պալատը ասես թէ լինի մի փառքի տաճար, Այնտեղ կան բազում աչք ու լսելիք ու լեզուներ չար, Մինչդեռ անտառը համր է, անզգայ, ահաւոր ու լուռ, Այնտեղ դուք՝ քաջեր, կարող էք խօսել, ջարդել ու փշրել, Ձեր կիրքն յագեցնել, թաքնուել երկնի սրատես աչքից Ու զուարճանալ այդ Լաւինիայի չքնաղ գանձերով։

Allons, rougissez de votre querelle, et soyez amis; unissez-vous pour l'objet même qui vous divise. C'est la dissimulation et la ruse qui doivent faire ce que vous désirez. Et il faut vous dire que ce qu'on ne peut faire comme on le voudrait, il faut le faire comme on peut. Apprenez ceci de moi; Lucrèce n'était pas plus chaste que cette Lavinia, l'amante de Bassianus. Il faut tracer une marche plus rapide que ces lentes langueurs et j'ai trouvé le chemin. Princes, on prépare une chasse solennelle, les beautés romaines vont y accourir en foule; les allées des forêts sont larges et spacieuses; et il y a des réduits solitaires, que la nature semble avoir ménagés pour la perfidie et le rapt: écartez dans ces retraites votre jolie biche; si les paroles sont inutiles, obtenez-la par violence. Espérez le succès par ce moyen, ou renoncez-y. Allons, allons, nous instruirons notre impératrice, et son génie consacré au crime et à la vengeance, de tous les projets que nous méditons. Elle saura assouplir les ressorts de notre entreprise par ses conseils, elle ne souffrira pas que vous vous querelliez et elle vous conduira tous deux au comble de vos voeux. La cour de l'empereur ressemble au temple de la Renommée; son palais est rempli d'yeux, d'oreilles et de langues; les bois, au contraire, sont impitoyables, effrayants, sourds et insensibles. C'est là, braves jeunes gens, qu'il faut parler, qu'il faut frapper et saisir votre avantage; assouvissez votre passion à l'abri des regards du ciel, et rassasiez-vous à loisir des trésors de Lavinia.

CHIRON.

Վախից չէ՞, որ դու նման խորհուրդ ես տալիս, Աարոն։

Ton conseil, ami, ne sent pas la lâcheté.

DEMETRIUS.

Սա կը լինի օրինակա՞ն, թէ՞ անօրինական, մինչեւ որ գտնեմ այն սառն աղբիւրը, Որ յագեցնի ծարաւը սրտիս Կամ այն թովչանքը, որ մեղմացնի այս խենթ կրքերը։ «*Ես կ'անցնեմ Ստիքսի ու մեռեալների թագաւորութիւններով*։»

Sit fas aut nefas, peu importe; jusqu'à ce que je trouve le ruisseau qui peut apaiser mes ardeurs, et le charme qui peut calmer ces transports, per Stygia et manes vehor. *"Oui, et il la récompensera honnêtement."*

*[All exit.]*

]{}[

ACT II. SCENE II.

A forest near Rome. Titus Andronicus and his three sons enter, making noise to flush out the quarry, followed by Marcus.]

TITUS.

Որսն սկսուած է, եւ առաւօտն է փայլուն ու զուարթ, Դաշտերն են բուրում, եւ անտառներն են կանաչին տալիս։ Շներն արձակէք, եւ թող արթնանան նրանց հաչոցից Կայսրը, իր չքնաղ հարսնացուն եւ արքայորդին։ Թող այնպէս հնչի փողը որսորդի, Որ արձագանքի ամբողջ պալատը զուարթ աղմուկով։ Տղաներ, ինչպէս ձեր, նոյնպէս մեր պարտքն է Հետեւել կայսրին բազմահոգութեամբ։ Այս գիշեր կարծես հանգիստ չեմ քնել, Բայց արշալոյսը ինձ ներշնչում է մի նոր սփոփանք։

La chasse est en train, la matinée est brillante et gaie, les champs sont parfumés, les bois sont verts; découplons ici la meute, et faisons aboyer les chiens pour réveiller l'empereur et sa belle épouse et faire lever le prince; sonnons si bien du cor que toute la cour retentisse du bruit. Mes enfants, chargez-vous, avec nous, du soin d'accompagner et de protéger la personne de l'empereur. J'ai été troublé cette nuit dans mon sommeil; mais le jour naissant a consolé mon coeur.

*[Saturninus, Tamora, Bassianus, Lavinia, Chiron and Demetrius all enter, dressed for the hunt.]*

TITUS [cont.]

Տէր իմ բարեգութ, ձեզ բազում բարի օրեր եմ մաղթում Եւ ձեզ էլ նոյնքան, ազնիւ տիրուհի, Ձեզ խոստացել եմ փառաւոր մի որս։

Mille heureux jours à Votre Majesté! Et à vous aussi, madame! J'avais promis à Vos Majestés l'appel d'un chasseur.

SATURNINUS.

Այո, եւ փողերն ուժգին հնչեցին՝ կարծես մի քիչ վաղ Արթնացնելով նոր ամուսնացած տիրուհիներին։

Et vous l'avez, rigoureusement sonné, seigneur, et peut-être un peu trop matin pour de nouvelles mariées.

BASSIANUS.

Ի՞նչ կ'ասի արդեօք չքնաղ Լաւինիան։

Qu'en dites-vous, Lavinia?

LAVINIA.

Ոչինչ։ Անցել է արդէն երկու ժամ, ինչ արթնացել եմ։

Je dis que non: il y avait deux heures et plus que j'étais tout éveillée.

SATURNINUS.

Գնանք, թող բերեն կառքն ու ձիերը։ [To Tamora.] Այժմ, կայսրուհի, դուք պիտի տեսնէք որսն հռոմէական։

Allons, qu'on amène nos chariots et nos chevaux, et partons pour notre chasse. [To Tamora.] Madame, vous allez voir notre chasse romaine.

MARCUS.
Տէր իմ, ես ունեմ այնպիսի շներ, Որ կ'արթնացնեն վայրի յովազին Եւ կը մագլցեն ամենաբարձր լեռան կատարը։
Seigneur, j'ai des chiens qui réclameront la plus fière panthère, et qui monteront jusqu'à la cime du promontoire le plus élevé.

TITUS.
Իմ ձին կը սուրայ գազանի հետքով, եւ կը թռչի նա ծիծեռնակի պէս դաշտի վրայով։
Et moi, j'ai un cheval qui suivra le gibier dans tous ses détours, et qui rasera la plaine comme une hirondelle.

*[Demetrius chuckles to Chiron.]*

DEMETRIUS.
Քիրոն, գալով մեզ, մենք առանց ձիու եւ առանց շան էլ Կարող ենք սիրուն քարայծին բռնել։
Chiron, nous ne chassons pas, nous, avec des chevaux ni des chiens; mais nous espérons forcer une jolie biche.

*[All exit.]*

][][

ACT II. SCENE III.
A lonely part of the forest. Aaron enters.

AARON.
Խելամիտ մարդը գուցէ համարի ինձ խելքից պակաս, Որ ես թաղում եմ ոսկին ծառի տակ՝ Զրկուելով նրա շողշողուն տեսքից, Բայց ով իմ մասին խորհում է այսպէս արհամարհանքով, Թող նա իմանայ, որ ես այդ ոսկուց պէտք է կռանեմ խորամանկութիւն Եւ վարպետօրէն ի գործ դնելով՝ Ես պէտք է ծնեմ մի անգերազանց սրիկայութիւն։
Un homme qui aurait du sens croirait que je n'en ai pas d'ensevelir tant d'or sous un arbre, pour ne jamais le posséder ensuite. Que celui qui concevra de moi une si pauvre opinion sache que cet or doit forger un stratagème qui, adroitement ménagé, produira un excellent tour de scélératesse.

*[Buries the gold.]*

AARON [cont.]
Սիրելի ոսկի, հանգչիր դու այստեղ, Որպէսզի խլես հանգիստն այն մարդկանց, Ովքեր կայսրուհու մեծ զարդատուփից ակնկալում են թանկարժէք գանձեր։
Ainsi, repose ici, cher or, pour ôter le repos à ceux qui recevront l'aumône de la cassette de l'impératrice.

*[Tamora enters alone.]*

TAMORA.

Օ՛ իմ Աhարոն, ինչո՞ւ ես նայում այսպէս տխրագին, Երբ ամէն էակ ցնծում է ուրախ, Երբ թռչուններն են ճիւղերի վրայ անուշ դայլայլում, Երբ գալարուելով՝ օձն է տարածւում վառ արեւի տակ, Երբ տերեւներն են զովասուն քամուց մեղմիւ օրօրւում Եւ գետնի վրայ իրենց գոյնզգոյն ստուերն են ձգում։ Եկ նստենք այստեղ՝ նրանց հաճելի հովանու ներքոյ, Ու մինչ շաղակրատ զիլ արձագանքը Ճչան փողերի ձայնը կրկնելով՝ կը խաբի շներին, Իբրեւ լսւում է երկու որսի ձայն, Եկ նստենք այստեղ, ունկնդրենք նրանց երկար հաչոցը Եւ լուռ ըմբոշխնենք այն վայելչանքը, Որ զգաց Դիդոն թափառաշրջիկ արքայորդու հետ, Երբ վրայ հասնող բարեբաստ քամին Նրանց թաքցրեց խիստ խորհրդաւոր քարանձաւի մէջ։ Մենք էլ կարող ենք, մեր բազուկները իրար հիւսելով, Յանձնուել ոսկեայ ու քաղցր նիրհին, Մինչեւ հաչոցը, փողերի աղմուկն ու թռչունների անուշ մեղեդին Դառնան քաղցր երգ, ինչպէս դայակի մեղրաշուրթ երգը ՝ քնող մանչուկին։

Mon aimable Aaron, pourquoi as-tu l'air triste, lorsque tout est riant autour de toi? Sur chaque buisson les oiseaux chantent des airs mélodieux: le serpent dort enroulé aux rayons du soleil; un zéphyr rafraîchissant agite doucement les feuilles vertes, dont les ombres mobiles se dessinent sur la terre. Asseyons-nous, Aaron, sous leur doux ombrage; et tandis que l'écho babillard se moque des chiens, en répondant de sa voix grêle aux sons éclatants des cors, comme si l'on entendait à la fois une double chasse, reposons-nous, écoutons le bruit de leurs abois; et après une lutte comme celle dont on dit que jouirent jadis Didon et le prince errant, lorsque, surpris par un heureux orage, ils se réfugièrent à l'ombre d'une grotte discrète, nous pourrons, enlacés dans les bras l'un de l'autre, après nos doux ébats, goûter un sommeil doré, tandis que la voix des chiens, les cors et le ramage des oiseaux seront pour nous ce qu'est le chant de la nourrice pour endormir son nourrisson.

AARON.

Տամօրա, եթէ քո տենչանքների տէրն է Վեներան, Ապա ինձ, աւա՜ղ, Սատուրնն է իշխում։ Ի՞նչ է ցոյց տալիս իմ այս մահաբեր անշարժ հայեացքը, Իմ լուռ ու ամպոտ այս տխրութիւնը, Ինչո՞ւ է այսպէս իմ գանգուրների ոլորքն արձակուած։ Ա՜խ, այդպէս իժն է կծիկը բացում, Որ իրագործի ճակատագրական իր յարձակումը։ Օ՛ ո՛չ, Տամօրա, դրանք Վեներայի նշանները չեն. Իմ սրտում վրէժ կայ, ձեռքիս՝ մահուան սուր, Ոխն ու արիւնն են մուրճի պէս զարկում յոգնած քունքերիս։ Լսիր, Տամօրա, թագուհի հոգուս, Ուրիշ երկինքներ չկան ինձ համար քեզանից բացի, Վրայ է հասել այդ Բասիանոսի կործանման օրը. Նրա Փիլոմելն իր լեզուն պէտք է կորցնի այսօր, Քո տղաները պէտք է անարգեն պատիւը նրա Եւ ձեռքերն իրենց պէտք է լուանան Բասիանոսի արեամբ։ Վերցրու այս նամակն ու, խնդրում եմ քեզ, Յանձնիր արքային ճակատագրական թղթագլանը, Բայց մի՛ հարցնիր ինձնից աւելին, մեզ լրտեսում են, Այստեղ է գալիս այնքան ցանկալի մեր բաժին որսը Եւ դեռ չի զգում վտանգն ահաւոր։

Madame, si Vénus gouverne vos désirs, Saturne domine sur les miens. Que signifient mon oeil farouche et fixe, mon silence et ma sombre mélancolie? la toison de ma chevelure laineuse déroulée comme un serpent qui s'avance pour accomplir un projet funeste? Non, madame, ce ne sont pas là des symptômes amoureux. La vengeance est dans mon coeur, la mort est dans mes mains; mon cerveau ne roule que projets de sang et de carnage. Écoutez, Tamora, vous, la souveraine de mon âme, qui n'espère d'autre ciel que celui que vous me donnez; voici le jour fatal pour Bassianus: il faut que sa Philomèle perde sa langue aujourd'hui; que vos enfants pillent les trésors de sa chasteté, et lavent leurs mains dans le sang de Bassianus. Voyez-vous cette lettre? prenez-la, je vous prie, et donnez au roi ce rouleau chargé d'un complot sinistre. Ne me faites point de questions en ce moment; nous sommes espionnés: je vois venir à nous une portion de notre heureuse proie; ils ne songent guère à la destruction de leur vie.

TAMORA.
Օ՛ քաղցր իմ մաւր, Աւելի քա՛ղցր, քան կեանքն ինձ համար։
Ah! mon cher More, plus cher pour moi que la vie!

AARON.
Ոչինչ աւելի, ազնիւ կայսրուհի, Բասիանոսն է գալիս, Վիճիր նրա հետ, եւ ես կը բերեմ քո որդիներին, Որ քեզ պաշտպանեն։
Pas un mot de plus, grande impératrice; Bassianus vient; soyez dure avec lui, et j'amènerai vos enfants pour soutenir vos querelles quelles qu'elles soient.

*[As Aaron exits Bassianus and Lavinia enter.]*

BASSIANUS.
Ո՞ւմ ենք մենք տեսնում։ Հռոմի կայսրուհուն՝ Առանց շքախմբի՞, որ չի պատշաճում նրա բարձր դիրքին։ Թէ՞ Դիանան է՝ հագնուած նրա պէս, Ով իր սրբազան այգին է թողել, Որ տեսնի կայսրի որսն այս անտառում։
Qui rencontrons-nous ici? Est-ce la souveraine impératrice de Rome, séparée de son brillant cortége? Est-ce Diane, vêtue comme elle, qui aurait quitté ses bois sacrés pour voir la grande chasse dans cette forêt?

TAMORA.
Դու յանդգնօրէն հետեւում ես մեր գաղտնի քայլերին։ Թէ ունենայի իշխանութիւնը սուրբ Դիանայի, Կը զարդարէի քո քունքերն այնժամ այն եղջիւրներով, Ինչպիսիք ունէր Ակտէոնն անբախտ, եւ քերծէները Վրայ կը տային նոր այլափոխուած քո մարմնի վրայ։
Espion insolent de nos démarches privées, si j'avais le pouvoir qu'on attribue à Diane, ton front serait à l'instant surmonté de cornes comme celui d'Actéon; et les chiens donneraient la chasse à tes membres métamorphosés, importun, impoli que tu es!

LAVINIA.
Ձեր թոյլատուութեամբ, ազնիւ կայսրուհի, Ասում են՝ ունէք գեղեցիկ շնորհ եղջիւրներ տալու, Եւ դուք անտառում առանձնացել էք ձեր այդ մաւրի հետ, Որ փորձեր դնէք այդ նպատակով։ Իւպիտեր, փրկիր բարեգութ կայսրին նրա շներից, Մեղք է, թէ նրան մի արու եղնիկ շներն համարեն։
Avec votre permission, aimable impératrice, on vous croit douée du don des cornes; et l'on pourrait soupçonner que votre More et vous vous êtes écartés pour faire des expériences. Que Jupiter préserve aujourd'hui votre époux des poursuites de sa meute! Il serait malheureux qu'ils le prissent pour un cerf.

BASSIANUS.
Հաւատացէք ինձ, ազնիւ թագուհի, ձեր սեւ քիմերցին Կը սեւացնի ձեր պատիւն անբիծ Իր գարշ, զզուելի մարմնի գոյնով։ Ինչո՞ւ էք լքել ձեր շքախումբը, Ինչո՞ւ էք իջել ձեան պէս սպիտակ ձեր սէգ նժոյգից Եւ թափառում էք այստեղ բարբարոս, կեղտոտ մաւրի հետ, Եթէ նողկալի վաւաշութիւնը ձեզ չի ուղեկցում։
Croyez-moi, reine, votre noir Cimmérien donne à Votre Honneur la couleur de son corps; il le rend comme lui, souillé, détesté et abominable. Pourquoi êtes-vous ici séparée de toute votre suite; pourquoi êtes-vous descendue de votre

beau coursier blanc comme la neige, et errez-vous ici dans un coin écarté, accompagnée d'un barbare More, si vous n'y avez pas été conduite par d'impurs désirs?

## LAVINIA.

Դուք կշտամբում էք իմ ազնիւ տիրոջն այն բանի համար, Որ նա խանգարեց ձեր զուարճանքը։ [To Bassianus.] Աղաչում եմ քեզ, գնանք այստեղից, Թող նա հրճուի ագռաւի պէս սեւ իր սեւ սիրոյ հետ, Խիստ պատշաճում է այս վայրը նրա գարշ լրբութեանը։
Et vous voyant troublée dans vos passe-temps, il est bien naturel que vous taxiez mon noble époux d'insolence. [To Bassianus.] Je vous en prie, quittons, ces lieux, et laissons-la jouir à son gré de son amant noir comme le corbeau: cette vallée convient à merveille à ses desseins.

## BASSIANUS.

Կայսրը՝ իմ եղբայրն, այս մասին պէտք է իսկոյն իմանայ։
Le roi, mon frère, sera informé de ceci.

## LAVINIA.

Նրա այս խաղերն յայտնի են վաղուց։ Քեզ, բարի արքայ, ի՜նչ դաժանօրէն խաբում են նրանք։
Oui, car ces écarts l'ont déjà fait remarquer. Ce bon roi! être si indignement trompé!

## TAMORA.

Ինչպէ՞ս հանդուրժեմ ես այս բոլորը։ Մտնում են Դեմետրիոսն ու Քիրոնը։
D'où me vient la patience d'endurer tout ceci?

*[Chiron and Demetrius enter.]*

## DEMETRIUS.

Մեր սիրելի մայր եւ խիստ փառաւոր մեր կայսրուհի, Ինչո՞ւ ես այսպէս գունատ ու տխուր։
Quoi donc, chère souveraine, notre gracieuse mère, pourquoi Votre Majesté est-elle si pâle et si défaite?

## TAMORA.

Իսկ ի՞նչ էք կարծում, իմ գունատութիւնն առիթներ չունի՞։ Ա՜խ, այս երկուսը ինձ քարշ տուեցին այստեղ, այս վայրը, Որ մի ամայի ու գարշ հովիտ է, ինչպէս տեսնում էք։ Թէեւ ամառ է, բայց ծառերն այստեղ մերկ են, անտերեւ, Մամուռն է պատել ու աղէտալի ճերմակ ճագումը, Այստեղ չի փայլում արեւը երբեք, Այստեղ ապրում են չարագոյժ ագռաւն ու բուն գիշերուայ, Եւ երբ նրանք ինձ ցոյց տուին այս գարշ, զզուելի փոսը, Նրանք ասացին՝ այստեղ ահաւոր գիշերուայ ժամին Հազար չար ոգի, հազար սուլող օձ, Տասն հազար դոդօշ եւ նոյնքան ոզնի Այնպիսի շփոթ ու զարհուրելի ձայներ են հանում, Որ մահկանացու ամէն մի էակ, լսելով նրանց, խելագարւում է կամ մեռնում յանկարծ, Երբ աւարտեցին իրենց դիւային այս պատմութիւնը, Նրանք ասացին, որ կապելու են ինձ սարսափազդու այս ծառի բնից Եւ թողնելու են ինձ որպէս աւար այս խղճուկ մահը։ Նրանք կոչեցին ինձ շնացող կին եւ ցանկասէր գոթ, ինձ անարգեցին դառն խօսքերով, Որ մարդու ականջն երբեք չէր լսել։ Եւ եթէ այստեղ դուք պատահաբար չյայտնուէիք, Ինձ կը սպանէին քինախնդրութեամբ։ Իմ վրէժն առէք, եթէ սիրում էք ձեր մօրն հարազատ, Թէ ոչ ՝ այսուհետ դուք չէք

համարուի իմ որդիները։
Et n'en ai-je pas bien sujet, dites-moi, d'être pâle? Ces deux ennemis m'ont attirée dans ce lieu que vous voyez être une vallée horrible et déserte: les arbres, au milieu de l'été, sont encore dépouillés et nus, couverts de mousse et du gui funeste: le soleil ne brille jamais ici; rien de vivant que le nocturne hibou et le sinistre corbeau; et en me montrant cet abîme horrible, ils m'ont dit qu'ici, au plus profond de la nuit, mille démons, mille serpents sifflants, dix mille crapauds gonflés de poisons, et autant d'affreux hérissons, feraient des cris si terribles et si confus que tout mortel en les entendant deviendrait fou à l'instant ou mourrait tout d'un coup: aussitôt après m'avoir fait cet infernal récit, ils m'ont menacée de m'attacher au tronc d'un if mélancolique, et de m'y abandonner à cette cruelle mort; ensuite ils m'ont appelée infâme, adultère, Gothe débauchée, et m'ont accablée de tous les noms les plus insultants que jamais oreille humaine ait entendus. Si une bonne fortune merveilleuse ne vous eût pas conduits dans ce lieu, ils allaient exécuter sur moi cette vengeance. Vengez-moi si vous aimez la vie de votre mère, ou renoncez à vous appeler jamais mes enfants.

DEMETRIUS.
Ահա ապացոյց, որ որդին եմ քո։ Սրով խոցում է Բասիանոսին։
Voilà la preuve que je suis votre fils.

*[Stabs Bassianus.]*

CHIRON.
Իսկ այս հարուածը ցոյց կը տայ ուժն իմ։ Խոցում է Բասիանոսին, որը մեռնում է։
Et ce coup, enfoncé jusqu'au coeur, pour prouver ma force.

*[Also stabs Bassianus.]*

LAVINIA.
Դու էլ հարուածիր, բարի՛ Շամիրամ, ո՛չ, աւելի ճիշտ՝ դաժան Տամօրա, Քանզի անունդ խիստ պատշաճում է քո բնութեանը։
Courage, Sémiramis, ou plutôt barbare Tamora; car il n'est point d'autre nom que le tien qui convienne à ta nature.

TAMORA.
Տուր ինձ դաշոյնը։ Այժմ, իմ որդիք, դուք պէտք է տեսնէք, Թէ ձեր մօր ձեռքը ինչպէ՛ս է մաքրում ձեր սիրելի մօր վիրաւորանքը։
Donnez-moi votre poignard: vous verrez, mes enfants, que la main de votre mère saura venger l'outrage fait à votre mère.

DEMETRIUS.
Սպասի՛ր, մայր իմ։ Նա ամէնից առաջ մեզ է պատկանում։ Նախ՝ ծեծիր ցորենն, ապա յարդն այրիր։ Այս սիրունիկը շա՜տ է պարծենում իւր պարկեշտութեամբ, Իւր ամուսնական հաւատարմութեամբ, Եւ նա, դրանցով սաստիկ շպարուած, փորձում է ծաղրել ձեր մեծութեանը։ Միթէ՞ նա պէտք է գերեզման տանի այս բոլորն իր հետ։
Arrêtez, madame: nous lui devons d'autres vengeances: d'abord battons le blé, et après brûlons la paille; cette mignonne fonde son orgueil sur sa chasteté, sur son voeu nuptial, sur sa fidélité; et, fière de ces spécieuses apparences,

elle brave Votre Majesté. Eh! emportera-t-elle cet orgueil au tombeau?

CHIRON.

Թէ տանի, թող ես ներքինի դառնամ։ Քարշ տուէք արագ նրա ամուսնուն ինչ-որ գաղտնի փոս, Եւ թող դիակը դառնայ գլխատակ մեր խօլ կրքերին։

Si elle l'y emporte, je consens qu'on me fasse eunuque: traînons son époux hors de ce lieu, dans quelque fosse cachée, et que son cadavre serve d'oreiller à nos voluptés.

TAMORA.

Իսկ երբ ճաշակեք մեղրը ցանկալի, Մի՛ թողէք մեղուին կենդանի մնայ. նա մեզ կը խայթի։

Mais lorsque vous aurez savouré le miel qui vous tente, ne laissez pas survivre cette guêpe pour nous piquer de son aiguillon.

CHIRON.

Հաւատա՛, մայր իմ, մենք կը պաշտպանուենք։ Գնանք, սիրունիկս, պէտք է բռնութեամբ հաճոյք ստանանք Ձեր պարկեշտութեան այդ պահածոյից։

Je vous promets, madame, d'y mettre bon ordre. Allons, ma belle, la violence va nous faire jouir de cet honneur si scrupuleusement conservé.

LAVINIA.

Տամօրա, միայն դէմքով ես դու կին։

O Tamora! tu portes la figure d'une femme.

TAMORA.

Չեմ ուզում լսել, շուտ տարէ՛ք նրան։

Je ne veux pas l'entendre parler davantage: entraînez-la loin de moi.

LAVINIA.

Արքայորդինե՛ր, աղաչէ՛ք նրան, որ նա ինձ լսի, Ես պէտք է նրան երկու խօսք ասեմ։

Chers seigneurs, priez-la d'entendre seulement un mot de moi.

DEMETRIUS.

Լսի՛ր, կայսրուհի։ Դու ուրախացիր՝ տեսնելով նրա արցունքները հորդ, Բայց թող քո սիրտը նրանց նկատմամբ լինի անզգայ, Ինչպէս անձրեւի կաթիլների տակ ամուր կայծքարը։

Écoutez-la, belle reine: faites-vous un triomphe de voir couler ses larmes: mais que votre coeur les reçoive comme le rocher insensible les gouttes de pluie.

LAVINIA.

Որտե՞ղ է տեսնուած, որ վագրի ձագը մօրը խրատի, Օ՛ կատաղութիւն, մի՛ ուսուցանիր դու նրա մօրը, Այդ զգացումը քեզ ներարկել է քո մայրը վաղուց. Կուրծքը ծծելիս կաթը փոխուել է քո մէջ մարմարի, Դու ճաշակել ես դաժանութիւնը նրա ստինքներից, Բայց որդին միշտ չէ նմանւում մօրը։ [To Chiron.] Աղաչի՛ր

նրան, գուցէ կանացի գութը շարժուի։

Depuis quand les jeunes tigres donnent-t-ils des leçons à leur mère? O! ne lui apprends pas la cruauté: c'est elle qui te l'a enseignée. Le lait que tu as sucé de son sein s'est changé en marbre: tu as puisé dans ses mamelles même ta tyrannie. [To Chiron.] Et cependant toutes les mères n'enfantent pas des fils qui leur ressemblent. Prie-la de montrer la pitié d'une femme.

## CHIRON.

Ի՞նչ։ Կամենում ես, որ ինքս ցոյց տամ, Թէ ապօրինի՞ զաւակ եմ, պոռնիկ։

Quoi! voudrais-tu que je prouvasse par ma conduite que je suis un bâtard!

## LAVINIA.

Ճշմարտութիւն է՝ ագռաւից երբեք արտոյտ չի ծնւում, Բայց ես լսել եմ, երանի՜ այժմ այսպէս կրկնուէր, Որ երբ առիւծի գութն է շարժւում, թողնում է կտրել Իր արքայական սուր մագիլները։ Ասում են՝ կեր է ագռաւը ճարում ճնճղուկի համար, Թէեւ սեփական ձագերն են քաղցած իրենց բնի մէջ; Օ՜ դու իմ հանդէպ, թէեւ քո դաժան սիրտն է ասում՝ ոչ, Աղաչում եմ քեզ, եղիր գթասիրտ։

Il est vrai le noir corbeau n'engendre pas l'alouette. Cependant j'ai ouï dire que le lion, touché de pitié, souffrit qu'on coupât ses griffes royales; on dit que les corbeaux nourrissent les enfants abandonnés, tandis que leurs propres petits oiseaux sont affamés dans leur nid. En dépit de ton coeur barbare, montre-toi, non pas aussi généreux, mais susceptible de quelque pitié.

## TAMORA.

Ես չեմ հասկանում՝ ինչ է նա ուզում։ Շո՜ւտ տարէք նրան։

Je ne sais ce que cela veut dire: entraînez-la.

## LAVINIA.

Օ՜ թոյլ տուր, որ քեզ սովորեցնեմ։ Ի սէր Տիտոսի, Որ կեանքդ բաշխեց, թէեւ կարող էր նա քեզնից խլել, - Մի լինիր այսքան քարասիրտ ու խուլ, բա՜ց ականջներդ։

O! Permets que je te l'enseigne: au nom de mon père qui t'a donné la vie; lorsqu'il aurait pu te tuer, ne t'endurcis point; ouvre tes oreilles sourdes.

## TAMORA.

Եթէ դու նոյնիսկ ինձ վիրաւորանք չհասնէիր, Նրա սիրոյ համար քեզ չէի գթայ։ Յիշէք, տղաներ, թէ ձեր մայրն ինչքան արցունք է թափել, Որպէսզի փրկէր ողջակիզումից կեանքը ձեր եղբօր, Բայց այդ կատաղի Անդրոնիկոսի գութը չշարժուեց, Տարէք դուք նրան եւ ինչպէս կ'ուզէք նրա հետ վարուէք, Ինչքան վատ վարուէք, այնքան սիրելի դուք կը դառնաք ինձ։

Quand tu ne m'aurais jamais personnellement offensée, le nom de ton père me rendrait impitoyable pour toi. Souvenez-vous, mes enfants, que mes larmes ont coulé en vain pour sauver votre frère du sacrifice: le cruel Andronicus n'a pas voulu s'attendrir: emmenez-la donc; traitez-la à votre gré: plus vous l'outragerez et plus vous serez aimés de votre mère.

## LAVINIA.

Տամօրա, եղիր բարի թագուհի, Եւ քո սեփական ձեռքերով սպանիր ինձ այս հովիտում։ Կեանքիս համար չէ,

որ այսպէս երկար աղաչում եմ քեզ, Ես՝ խեղճ աղջիկս, մեռայ, երբ մեռաւ իմ Բասիանոսը։
Tamora, mérite le nom d'une reine généreuse, en me tuant ici de ta propre main: car ce n'est pas la vie que je te demande depuis si longtemps, je suis morte depuis que Bassianus a été tué!

TAMORA.
Իսկ ի՞նչ ես ուզում ինձնից, խելագա՛ր։
Que demandes-tu donc? Femme insensée, laisse-moi.

LAVINIA.
Օ՜ մի յապաղիր, մահ եմ աղերսում եւ ուրիշ մի բան, Որն արգելում է կանացիութիւնս ասել իմ լեզուին։ Օ՜ ինձ ազատիր նրանց կրքերից, Որ շատ աւելի սարսափելի են, քան ինքը՝ մահը։ Արագ ինձ նետիր ինչ-որ կեղտոտ փոս, Որտեղ չի կարող մարդկային աչքը մարմինս տեսնել, Սպանիր, որ դու կոչուես գթասիրտ, բարի մարդասպան։
C'est la mort à l'instant que j'implore; et une grâce encore, que la pudeur empêche ma langue de nommer. O! Sauve-moi de leur passion, plus fatale pour moi que le coup de la mort, et jette-moi dans quelque abîme odieux, où jamais l'oeil de l'homme ne puisse considérer mon corps: fais cela et sois un meurtrier charitable.

TAMORA.
Ես ինչպէ՞ս զրկեմ իմ տղաներին իրենց հաճոյքից, Ո՛չ, ո՛չ։ Թող նրանք իրենց կրքերը քեզնով յագեցնեն։
Je volerais à mes chers fils leur salaire! non; qu'ils assouvissent sur toi leurs désirs.

DEMETRIUS.
Դեհ, առաջ անցիր, առանց այն էլ մեզ երկար պահեցիր։
Allons, viens: tu n'es restée ici que trop longtemps.

LAVINIA.
Ոչ մի գթութի՞ւն եւ նոյնիսկ ոչ մի կանացիութի՞ւն։ Ախ, դու վայրենի, դու կնոջ անունն արատաւորող, Թող անէծք թափուի։
Point de grâce, point de pitié de femme! O! brutale créature, l'opprobre et l'ennemie de tout notre sexe! que la destruction tombe.

CHIRON.
Ես պիտի փակեմ քո մեծ բերանը։ Քարշ տուր, եղբայրս, սրա ամուսնուն, Սա հէնց այն փոսն է, Ուր Ահարոնը մեզ խորհուրդ տուեց թաքցնել նրան։
Ah! je vais te fermer la bouche. Toi, traîne son mari; voici la fosse où Aaron nous a dit de le cacher.

*[Demetrius throws the body of Bassianus into the pit; then Demetrius and Chiron exit, dragging Lavinia with them.]*

TAMORA.
Գնացէք բարով, բայց զգոյշ եղէք այդ անզգամից, Թող սիրտս չզգայ ուրախութիւնը այնքան ժամանակ, Քանի դեռ բոլոր Անդրոնիկոսներին չեմ բնաջնջել։ Թող վրէժխնդիր իմ տղաները այս կոյսին պղծեն, Իսկ ես

կը փնտրեմ սիրելի մաւրիս։

Adieu, mes enfants: songez à la bien mettre en sûreté. Que jamais mon coeur ne goûte un véritable sentiment de joie jusqu'à ce que la race entière des Andronicus soit détruite. Maintenant je vais chercher mon aimable More et laisser mes enfants irrités déshonorer cette malheureuse.

*[As Tamora exits Aaron re-enters with Quintus and Martius.]*

AARON.

Այս կողմը եկէք, արքայորդիներ, բայց զգոյշ քայլէք, Ես ձեզ բերում եմ ուղիղ այն փոսը, Որտեղ տեսել եմ յովազին քնած։

Venez, mes seigneurs, mettez en avant votre meilleur pied; je vais tout à l'heure vous conduire à la fosse dégoûtante où j'ai découvert la panthère profondément endormie.

QUINTUS.

Աչքերս են մթնում, սա լաւ նշան չէ։

Ma vue est extrêmement obscurcie, quel qu'en soit le présage.

MARTIUS.

Իմն էլ, տղաներ։ Թէ չամաչէի, Մեր որսը թողած՝ կը քնէի մի քիչ։

Et la mienne aussi, je vous le proteste; si ce n'était pas une honte, je laisserais volontiers la chasse pour dormir quelques instants.

*[Martius falls into the pit.]*

QUINTUS.

Ի՞նչ, դու փո՞սն ընկար։ Օ՜ դաւաճիր փոս։ Վայրի վարդերն են բերանը ծածկել, Իսկ տերեւներին նոր հեղուած արեան նոր կաթիլներ կան, Շատ աւելի թարմ, քան առաւօտեան մաքրափայլ ցօղը՝ ծաղկանց թերթերին։ Սա ինձ թւում է չարագուշակ տեղ։ Խօսիր, եղբայր իմ, վիրաւո՞ր ես դու։

Quoi, es-tu tombé? Quel dangereux précipice, dont l'ouverture est couverte par des ronces touffues dont les feuilles sont teintes d'un sang tout nouvellement répandu, et aussi frais que la rosée du matin distillée sur les fleurs! Cet endroit me semble fatal. Parle-moi, mon frère, t'es-tu blessé dans ta chute?

MARTIUS.

Վիրաւորուեցի խիստ սարսափելի մի տեսարանից, Որ երբեւիցէ կարող էր փշրել սիրտը մարդկային։

O mon frère! je suis blessé par l'aspect du plus triste objet dont la vue ait fait gémir mon coeur.

AARON.

Իսկ այժմ կայսրին կը բերեմ այստեղ, Սրանց տեսնելով՝ նա հաւանաբար պէտք է կասկածի, Որ հէնց սրանք են եղբօրն սպանել։

Maintenant je vais chercher le roi et l'amener ici, afin qu'il les y trouve; il verra là un indice probable que ce sont eux qui ont assassiné son frère.

*[Aaron exits.]*

MARTIUS.
Եղբայրս, ինչո՞ւ ինձ սիրտ չես տալիս, Չես օգնում, որ ես դուրս գամ անիծեալ Այս արնոտ փոսից:
Pourquoi ne me consoles-tu pas et ne m'aides-tu pas à sortir de cet exécrable fosse toute souillée de sang?

QUINTUS.
Ինձ պաշարել է անսովոր մի վախ, Եւ մի ցուրտ դող է իմ մարմնով վազում, յօդերս դողում: Սիրտս զգում է աւելի վատ բան, Քան թէ կարող են աչքերը տեսնել:
Je me sens saisi d'une terreur extraordinaire: une sueur glacée inonde tous mes membres tremblants; mon coeur soupçonne plus de choses que n'en voient mes yeux.

MARTIUS.
Որ դու համոզուես, թէ քո ազնիւ սիրտն ինչպէս է զգում ճշմարտութիւնը, Աhարոնի հետ նայիր փոսի մէջ եւ դու կը տեսնես արեան ու մահուան պատկերն ահաւոր:
Pour te prouver que ton coeur devine juste, Aaron et toi, regardez dans cette caverne, et voyez un affreux spectacle de mort et de sang.

QUINTUS.
Գնացել է նա, իսկ իմ կարեկցող սիրտը չի թողնում, Որ իմ աչքերը մի անգամ նայեն այն տեսարանին, Որը կասկածի սարսափ է ծնում: Օ՜ ասա՛, եղբայր, ի՞նչ կայ այդ փոսում, Ես մինչեւ հիմա երեխայի պէս վախ չեմ ունեցել, Բայց այժմ նայի՛ր՝ վախենում եմ ես:
Aaron est parti: et mon coeur compatissant ne peut permettre à mes yeux de regarder l'objet dont le soupçon seul le fait frissonner; oh! dis-moi ce que c'est: jamais, jusqu'à ce moment, je n'ai jamais été assez enfant pour craindre sans savoir pourquoi.

MARTIUS.
Իշխան Բասիանոսն ընկած է այստեղ՝ Այս մութ, արնախում, գարշելի փոսում, Մորթուած գառան պէս:
Le prince Bassianus est gisant en un monceau, comme un agneau égorgé, dans cet antre détestable, ténébreux et abreuvé de sang.

QUINTUS.
Բայց եթէ, իրօք, փոսն այսքան մութ է, Ինչպէ՞ս իմացար, որ Բասիանոսն է:
Si cet antre est si sombre, comment peux-tu savoir que c'est lui?

MARTIUS.
Արիւնոտ մատին կայ մի գեղեցիկ, փայլուն մատանի, Որ լոյս է տալիս այս ամբողջ փոսին: Եւ այդ մատանին, ինչպէս կանթեղը դամբարանի մէջ, Լուսաւորում է այդ մեռած մարդու այտերն հողեղէն Եւ ցոյց է տալիս չարաձայն փոսը: Այսպէս գիշերով լուսինն էր փայլում Պիրամի վրայ, Երբ նա պառկած էր՝ իր սիրած կոյսի արեամբ շաղախուած: Եղբայր, ինձ օգնիր քո թոյլ ձեռքերով, Եթէ սարսափն է նրանց

թուլացրել, Օգնի՛ր, որ դուրս գամ այս անյագ լափող ապաստարանից, Այնքան գարշելի, որքան Կոցիտի երախը մթին։

Il porte à son doigt sanglant un anneau précieux dont les feux éclairent toute cette profondeur, comme une lampe sépulcrale dans un monument brille sur les visages terreux des morts et montre les entrailles rugueuses de cet abîme: telle la pâle lueur de la lune tombait sur Pyrame, gisant dans la nuit et baigné dans son sang. O mon frère! aide-moi de ta main défaillante. Si la crainte t'a rendu aussi faible que je le suis. Aide-moi à sortir de ce cruel et dévorant repaire, aussi odieux que la bouche obscure du Cocyte.

QUINTUS.

Երկարացրու ձեռքդ, որ կարողանամ քեզ փոսից հանել, Կամ եթէ յանկարծ ուժս չպատի, Ես ինձ կը գցեմ կուլ տուող փոսը՝ Խեղճ Բասիանոսի գերեզմանը խոր։

Tends-moi la main, afin que je puisse t'aider à remonter. Ou, si la force me manque pour te rendre ce service, je serai entraîné par ton poids dans le sein de cet abîme, tombeau du pauvre Bassianus. O! je n'ai pas la force de t'attirer sur le bord.

MARTIUS.

Իսկ ես առանց քեզ չեմ կարող դուրս գալ։

Et moi, je n'ai pas la force de monter sans ton secours.

QUINTUS.

Ձեռքդ տուր նորից, ես բաց չեմ թողնի, Մինչեւ որ փոսից քեզ դուրս չհանեմ, Եթէ չես կարող ինձ մօտ գալ, եղբայր ես կը գամ քեզ մօտ։

Donne-moi ta main encore une fois, je ne la lâcherai pas cette fois que tu ne sois dehors, ou moi au fond. Tu ne peux venir à moi, je viens à toi.

*[Quintus pratfalls and tumbles into the pit as well just as Aaron and Saturninus enter.]*

SATURNINUS.

Եկ իմ ետեւից, ուզում եմ տեսնել, թէ ինչ փոս է սա, Ո՞վ է մէջն ընկել։ Խօսիր, ո՞վ ես դու, Որ այս յօրանջող երախն ես ընկել։

Venez avec moi. Je veux voir quel trou il y a ici, et quel est celui qui vient de s'y précipiter. Parle, qui es-tu, toi qui viens de descendre dans cette crevasse de la terre?

MARTIUS.

Դժբախտ որդին մեր Անդրոնիկոսի, Չարագոյժ ժամը ինձ այստեղ բերեց, Որպէսզի գտնեմ մեռած եղբօրդ, խեղճ Բասիանոսին։

Le malheureux fils du vieil Andronicus, conduit ici par la plus fatale destinée, pour y trouver ton frère Bassianus mort.

SATURNINUS.

Եղբայրս մեռա՞ծ։ Կատակում ես դու, Ես տեսայ նրան ու իր կնոջը փոքրիկ խրճիթում, Որ գտնւում է այս որսատեղից ճիշտ դէպի հիւսիս, Մի ժամ է անցել, որ ես երկուսին թողեցի այնտեղ։

Mon frère mort? Tu ne parles pas sérieusement; son épouse et lui sont vers le nord de la forêt, au rendez-vous de cette agréable chasse; il n'y a pas encore une heure que je l'y ai laissé.

MARTIUS.
Չենք կարող ասել՝ որտեղ ենք թողել նրանց կենդանի, Բայց, աւա՛ղ, այստեղ, այս փոսում գտանք մենք նրան մեռած։
Nous ne savons pas où vous l'avez laissé vivant, mais, hélas! nous l'avons trouvé mort ici.

*[Tamora enters with Titus and Lucius.]*

TAMORA.
Որտե՞ղ է կայսրը, իմ ամուսինը։
Où est mon époux, où est l'empereur?

SATURNINUS.
Այստեղ է, թէեւ աւերող վիշտ է նրան պաշարել։
Ici, Tamora; mais navré d'un chagrin mortel.

TAMORA.
Իսկ քո եղբայրը որտե՞ղ է, տէր իմ։
Où est votre frère Bassianus?

SATURNINUS.
Դու թափանցում ես իմ վէրքի խորքը։ Խեղճ մարդն ընկած է այստեղ սպանուած։
Vous touchez au fond de ma blessure; l'infortuné Bassianus est ici assassiné.

TAMORA.
Ուրեմն, տէր իմ, շա՞տ ուշ են բերել չարագոյժ նամակն, Ուր անժամանակ այս ողբերգութեան մասին է խօսւում։
Alors je vous apporte trop tard ce fatal écrit, le plan de cette tragédie prématurée.

*[She hands Saturninus a letter.]*

TAMORA [cont.]
Ես զարմանում եմ, որ մարդու դէմքը կարող է թաքցնել Քաղցր ժպիտով այսքան արիւնոտ գազանութիւններ։
Je suis bien étonnée que le visage d'un homme puisse cacher dans les replis d'un sourire gracieux tant de cruauté et de barbarie.

SATURNINUS.
*«Եթէ ուղղակի մեզ չյաջողուի նրան հանդիպել, Սիրելի որսորդ, մենք ակնարկում ենք քեզ Բասիանոսին, Դու*

*Նրա համար գերեզման փորիր: Հասկացա՞ր դու մեզ: Քո վարձը փնտրիր եղինջների մէջ՝ թանթրուենու տակ, Որի ճիւղերը ծածկում են փոսը, Ուր Բասիանոսին մենք պիտի թաղենք: Գործիր, կը դառնաս մեր բարեկամը քո ամբողջ կեանքում»:* Օ՛ իմ Տամորա, լսե՞լ ես արդեօք այսպիսի մի բան, Նայի՛ր, սա փոսն է, սա՝ թանթրուենին, Փնտրէք, գուցէ դուք գտնէք որսորդին, Որ պէտք էր իմ խեղճ եղբօրը սպանէր:

*«Si nous manquons de le joindre à propos; mon bon chasseur! C'est Bassianus, que nous voulons dire. Songe seulement à creuser un tombeau pour lui; tu nous entends. Va chercher ta récompense sous les orties au pied du sureau, qui couvre de son ombrage l'ouverture de cette même fosse où nous avons résolu d'enterrer Bassianus, fais cela et tu acquerras en nous des amis sûrs.»* O Tamora! a-t-on jamais entendu rien de pareil? Voici la fosse, et voilà le sureau; voyez, amis, si vous pourriez découvrir le chasseur qui doit avoir assassiné ici Bassianus.

*[Aaron points toward the bag of gold.]*

AARON.
Օ՛ տէր իմ, ահա պարկով լի ոսկին:
Mon digne souverain, voici le sac d'or.

*[Saturninus turns on Titus.]*

SATURNINUS.
Արիւնռուշտ ցեղի քո երկու վայրի շան լակոտները Իմ ազնիւ եղբօր կեանքը խլեցին: Դուրս քաշէք փոսից, տարէք նրանց բանտ, Թող մնան այնտեղ այնքան ժամանակ, Մինչեւ որ գտնենք մենք նրանց համար չլսուած պատիժ:
Deux dogues nés de toi, dogues cruels et sanguinaires, ont ôté ici la vie à mon frère. Arrachez-les de la fosse pour les traîner en prison; qu'ils y restent jusqu'à ce que nous ayons inventé pour leur supplice des tortures nouvelles et inouïes.

TAMORA.
Ի՞նչ, նրանք այստեղ, այս փոսի մէ՞ջ են: Օ՛ ճիւաղութի՛ւն: Ինչ հեշտութեամբ է մարդասպանը երեւան գալիս:
Quoi! ils sont dans cette fosse? O prodige! avec quelle facilité le meurtre se découvre!

TITUS.
Վեհափառ կայսր, ահա ծնրադիր աղաչում եմ քեզ՝ Արցունքն աչքերիս, ես հազուադէպ եմ արտասւում, տէր իմ, Անէծք՝ անիծեալ իմ տղաներին, Եթէ պարզուի, որ այս յանցանքը նրանք են գործել:
Auguste empereur, je vous demande à genoux une grâce, avec des larmes qui ne coulent pas aisément, c'est que ce crime atroce de mes enfants maudits, maudits si leur crime est prouvé.

SATURNINUS.
Եթէ պարզուի՞: Նայի՛ր, յանցանքը պարզ երեւում է: Նամակն ո՞վ գտաւ, գուցէ Տամորա՞ն:
S'il est prouvé! vous voyez qu'il est manifeste. Qui a trouvé cette lettre? Tamora, est-ce vous?

TAMORA.
Տիտոսը գտաւ, ինքն էլ վերցրեց:

C'est Andronicus lui-même qui l'a ramassée.

TITUS.
Այո, ես վերցրի, բայց թոյլ տուր, տէր իմ, Երաշխաւորել իմ տղաներին։ Երդւում եմ իմ հօր սուրբ գերեզմանով՝ Նրանք պատրաստ են իրենց կեանքի գնով քեզ պատասխանել Ինչի մէջ նրանց կասկածում ես դու։
Oui, c'est moi, seigneur; et cependant souffrez que je sois leur caution, car je fais voeu, par la tombe de mon vénérable père qu'ils seront toujours prêts à se présenter sur l'ordre de Votre Majesté; et à répondre sur leurs vies de vos soupçons.

SATURNINUS.
Դու չէ, որ պիտի երաշխաւորես։ Ե՛կ իմ ետեւից։ Թող մի քանիսը բերեն սպանուածին, իսկ մի քանիսն էլ՝ մարդասպաններին, Չթողնէք խօսեն, քանզի յանցանքը խիստ բացայայտ է։ Իմ հոգին վկայ, եթէ ես գտնեմ մահից աւելի վատթար մի վախճան, Ես այդ վախճանով վերջ կը տամ նրանց։
Tu ne seras pas leur caution; allons, suis-moi. Que les uns enlèvent le corps, et que d'autres emmènent les meurtriers; qu'ils ne disent pas une parole; la culpabilité est évidente; sur mon âme, s'il était une fin plus cruelle que la mort, je la leur ferais subir.

TAMORA.
Ես, Անդրոնիկոս, կը խնդրեմ կայսրին, Դու մի՛ վախենա, նրանք ձեռ չեն տայ քո տղաներին։
Andronicus, je prierai le roi pour toi; ne crains rien pour tes fils, ils se tireront d'affaire.

TITUS.
Գնանք, Լուցիոս, գնանք, մի՛ խօսիր նրանց հետ այլեւս։
Viens, Lucius, viens; ne t'arrête pas à leur parler.

*[They all exit.]*

][][

ACT II. SCENE IV.
Another part of the forest. Demetrius and Chiron enter with Lavinia, having been raped; her hands have been cut off, and her tongue cut out.]

DEMETRIUS.
Դէ՛հ, գնա պատմիր, եթէ կարող է քո լեզուն խօսել, Թէ ով է կտրել քո քնքուշ լեզուն ու քեզ անարգել։
Va maintenant; dis, si tu peux parler, qui t'a coupé la langue et t'a déshonorée.

CHIRON.
Գրիր եւ այդպէս քո միտքը յայտնիր, Եւ եթէ թոյլ տան կտրած ձեռքերդ, դարձիր գրագիր։
Écris ta pensée, trahis ainsi tes sentiments; et, si tes moignons te le permettent, fais l'office d'écrivain.

DEMETRIUS.
Նայի՛ր, ինչպէս է նա մեզ սպառնում համր նշաններով։
Vois, comme elle peut manifester son ressentiment avec des signes et des indices.

CHIRON.
Վազիր տուն, խնդրիր անուշահամ ջուր, ձեռքերդ լուա։
Va chez toi, demande de l'eau de senteur et lave tes mains.

DEMETRIUS.
Նա լեզու չունի, որ ջուր աղերսի, եւ ոչ էլ ձեռքեր, որ ձեռք լուանայ, Թոյլ կը տանք նրան, որ լուռ զբօսնի։
Elle n'a point de langue pour appeler ni de mains à laver; ainsi laissons-la à ses promenades silencieuses.

CHIRON.
Եթէ նման դէպք ինձ հետ պատահէր, ինձ կը կախէի։
Si j'étais à sa place, j'irais me pendre.

DEMETRIUS.
Թէ ձեռքեր ունես, պարանը կապիր։
Oui, si tu avais des mains pour t'aider à nouer la corde.

*[Demetrius and Chiron exit as Marcus enters.]*

MARCUS.
Ո՞վ է սա, միթէ՞ արագ փախչողը եղբօրս աղջիկն է։ Ինձ մի բառ ասա, որտե՞ղ է հիմա քո ամուսինը։ Եթէ ես քնեմ, գանձեր կը տայի, որ ինձ արթնացնեն, Իսկ թէ չքնեմ, թող չար մոլորակն ինձ այնպէս խփի, Որ քնեմ յաւէտ։ Խօսի՛ր, սիրելի իմ եղբօր աղջիկ, Ինչպիսի՜ դաժան, անողորմ մի ձեռք քեզ այլանդակեց եւ քո մարմնից կտրեց երկու ճիւղ, երկու սիրուն զարդ, Որոնց շուքի տակ փափագում էին արքաներն հանգչել, Բայց քո մեծ սիրոյ երջանկութիւնը Չկարողացան նրանք ճաշակել։ Ինչո՞ւ չես խօսում։ Աւա՜ղ, տաք արեան կարմրավառ մի շիթ՝ Քամուց շփոթուած գետակի նման Քո խիստ վարդագոյն շուրթերի միջեւ մերթ բարձրանում է, Մերթ իջնում քո քաղցր շնչառութեան հետ։ Բայց, հաւանաբար, ինչ-որ Թերսիդես անարգել է քեզ եւ կտրել լեզուդ, որ դու չյայտնես բռնաբարողիդ։ Ա՛խ, դու ամօթից դէմքդ ես շուռ տալիս, Չնայած արեան ամբողջ կորստին, Որ երեք բացուած վէրքից է բխում, Դեռ քո այտերն են շիկնում ամօթից, ինչպէս Տիտանը, Երբ նա կռւում էր մի մութ ամպի հետ։ Ախ, քո փոխարէն ե՞ս պէտք է խօսեմ, Ե՞ս պէտք է ասեմ, որ սա այդպէս է։ Ինչպէս կ'ուզէի քո սիրտը կարդալ, գտնել գազանին, եւ խոշտանգելով մեղմացնէի տանջանքը հոգուս։ Թաքնուած վիշտը ասես թէ լինի մի փակ վառարան, Որ տաք մոխրի է վերածում սիրտը, ուր վիշտն է ապրում։ Սուրբ Փիլոմելը՝ լեզուն կտրուած, Համր նախշերով իր միտքն էր հիւսում կտաւի վրայ, Բայց, իմ սիրելի եղբօրս աղջիկ, քեզնից խլել են այս շնորհն անգամ, Դու հանդիպել ես Թերեւսից ճարպիկ, խորամանկ մարդու, Եւ նա այս սիրուն մատներն է կտրել, Որ կարող էին Փիլոմելից էլ աւելի հմուտ, նրբօրէն հիւսել։ Օ՜ եթէ հրէշը այս շուշանաթոյր ձեռքերը տեսնէր, Թէ ինչպէս էին տերեւների պէս քնքշօրէն դողում քնարի վրայ, Թէ ինչպէս էին մետաքսեայ լարերն համբուրում նրանց, Ձեռք չէր տայ

նրան, Կամ եթէ լսէր քո սուրբ խօսքերի դաշնակութիւնը, Որ քո անուշիկ լեզուն էր հիւսում, Նա իր դաշոյնը պատեան կը դնէր Եւ կը մրափէր Ցերբերի նման քո ոտքերի տակ։ Գնանք, սիրելի՛ս, եւ թող քո հայրը ցաւից կուրանայ, Քանզի այս տեսքից պէտք է կուրանան քո հօր աչքերը։ Մի ժամում հողմը կ'աւերի կանաչ մարգագետինը, Իսկ ի՞նչ կը թողնի քո հօր արցունքը մի ամբողջ ամսում։ Մի՛ փախչիր, քանզի մենք պէտք է ողբանք քեզ հետ միասին, Օ՛ երանի թէ մեր արցունքները կարողանային քո վիշտն ամոքել։

Que vois-je? Serait-ce ma nièce qui fuit si vite? Ma nièce, un mot: où est ton mari? Si c'est un songe, je voudrais me réveiller au prix de tout ce que je possède. Et si je suis éveillé, que l'influence de quelque astre fatal me frappe et me plonge dans un sommeil éternel. Parle-moi, chère nièce, quelle main féroce et sans pitié t'a ainsi mutilée? qui a coupé et dépouillé ton corps de ses deux branches, de ses doux ossements à l'ombre desquels des rois ont désiré de s'endormir sans pouvoir obtenir un aussi grand bonheur que la moitié de ta tendresse? Pourquoi ne me réponds-tu pas? Hélas! un ruisseau cramoisi de sang fumant comme une source bouillante et agitée par le vent sort et tombe entre tes deux lèvres de rose, va et revient avec le souffle de ta respiration. Sûrement quelque nouveau Térée a profané ta fleur, et, pour t'empêcher de découvrir son forfait, t'a coupé la langue. Ah! voilà que tu détournes ton visage confus, et malgré tout ce sang que tu perds, et qui sort comme des trois bouches d'un conduit, tes joues se colorent encore comme la face de Titan lorsqu'il rougit d'être assailli par un nuage. Répondrai-je pour toi? Dirai-je que cela est vrai? Que ne puis-je lire dans ton coeur, et connaître cette bête féroce, afin que je puisse l'accabler d'injures pour soulager mon coeur! Le chagrin caché, fermé comme un four fermé, brûle et calcine le coeur où il est renfermé. La belle Philomèle ne perdit que la langue; et elle parvint à broder ses sentiments sur un ennuyeux canevas; mais, toi, mon aimable nièce, cette ressource t'a été enlevée. Tu as rencontré un Térée plus rusé, qui a coupé ces jolis doigts qui auraient brodé bien mieux que ceux de Philomèle. Ah! si le monstre avait vu ces mains de lis trembler, comme les feuilles du tremble, sur un luth, et faire frémir ses cordes de soie du plaisir d'en être caressées, il n'eût pu les toucher, au prix même de sa vie. S'il eût entendu la céleste harmonie que produisait cette langue mélodieuse, il eût laissé échapper de ses mains le couteau cruel, et se fût endormi, comme Cerbère aux pieds du poëte de Thrace. Allons, viens, viens frapper ton père d'aveuglement; car une pareille vue doit rendre un père aveugle. Un orage d'une heure suffit pour noyer les prairies parfumées: que ne doivent donc pas produire sur les yeux de ton père des années de larmes? Ne me fuis point: nous pleurerons avec toi; plût au ciel que nos larmes pussent soulager ta souffrance!

*[They exit.]*

][][

## ACT III. SCENE I.

Rome. A street full of Judges, Tribunes and Senators. Martius and Quintus, bound, passing across the stage to the place of execution with Titus going before them, pleading.

## TITUS.

Օ՛ ինձ լսեցէք, իմաստուն հայրեր, ազնիւ տրիբուններ, Սպասէք մի պահ։ Ի սէր ծերունուս, Ով վտանգաւոր պատերազմներում ջահէլութիւնն էր ծախսում անխնայ, Մինչդեռ անվտանգ դուք քնում էիք, Ի սէր իմ արեան, որ հեղում էի Հռոմի համար, Ի սէր աներազ ու ցրտասառոյց այն գիշերների, Ի սէր դառնահեծ այն արցունքների, Որ դուք տեսել էք այտերիս վրայ, Շարժէք ձեր գութը իմ դատապարտեալ որդոց նկատմամբ, Որոնց հոգիներն ապականուած չեն, ինչպէս կարծում էք։ Ես քսաներկու իմ որդիների բախտը լաց չեղայ,

Քանզի մահացան պատուի սուրբ մահճում, Բայց ի սէր նրանց, ազնիւ տրիբուններ, ես դրոշմում եմ Այս հողի վրայ իմ սրտի անհուն հեկեկանքները Եւ արցունքները տխրագին հոգուս։ Թող յագեցնեն իմ արցունքները ծարաւը հողի, Իմ զաւակների ազնիւ արիւնը կը ստիպի հողին ամօթից շիկնել։
Écoutez-moi, vénérables pères. Nobles tribuns, arrêtez un moment, par pitié pour mon âge, dont la jeunesse fut employée à des guerres dangereuses, tandis que vous dormiez en paix; au nom de tout le sang que j'ai versé pour la grande cause de Rome, de toutes les nuits glacées pendant lesquelles j'ai veillé, au nom de ces larmes amères que vous voyez remplir sur mes joues les rides de la vieillesse; ayez pitié pour mes enfants condamnés, dont les âmes ne sont pas aussi perverses qu'on l'imagine! J'ai perdu vingt-deux enfants sans jamais répandre une larme; morts dans le noble lit de l'honneur.

*[Prostrates himself. No one pays him any attention as they pass by.]*

## TITUS [cont.]
Օ՜ հո՛ղ, եթէ դու հրաժարուես խմել արիւնն իմ որդոց, Քեզ հետ աւելի կը մտերմանամ այս անձրեւով, Որ դուրս է յորդում այս երկու մաշուած հին սափորներից, Քան թէ այս ջահէլ ապրիլը՝ իր խենթ հեղեղումներով, Ես քեզ կը ցօղեմ սառն անձրեւներով ամռան երաշտին, Կը հալեցնեմ ձմռան օրերին ձիւներդ բոլոր տաք արցունքներով Եւ կը պարգեւեմ քո ազնիւ դէմքին գարուններն յաւէրժ։
C'est pour ceux-ci, pour ceux-ci, tribuns, que j'écris sur la poussière l'angoisse profonde de mon coeur et les larmes de mon âme, qu'elles abreuvent la terre altérée: le sang de mes chers enfants la fera rougir de honte. O terre! je prodiguerai à ta soif plus de pleurs tombant de ces deux urnes vieillies, que le jeune avril ne te donnera de ses rosées; dans les ardeurs de l'été, je t'en arroserai encore: dans l'hiver, je fondrai tes neiges par mes larmes brûlantes, et j'entretiendrai une verdure éternelle sur ta surface, si tu refuses de boire le sang de mes chers fils.

*[Lucius enters with a sword in his hand.]*

## TITUS [cont.]
Տրիբուններ արժանապատի՛ւ, օ՜, այրե՛ր բարի, Իմ տղաների շղթան արձակէք Եւ փոխէք նրանց մահուան վճիռը, Թոյլ տուէք ասել, որ մինչեւ հիմա ես լաց չեմ եղել, Արդ, արցունքներս ասես թէ հմուտ ճարտասաններ են։
Tribuns révérés; bons vieillards, délivrez mes enfants de leurs chaînes, révoquez l'arrêt de leur mort, et faites-moi dire, à moi, qui n'avais jamais pleuré, que mes larmes sont douées d'une éloquence persuasive.

## LUCIUS.
Օ՜ Ազնիւ հայր իմ, իզու՛ր ես ողբում, Տրիբունները քեզ չեն էլ լսում, այստեղ մարդ չկայ, Քո վիշտն ես պատմում քարերին միայն։
O! Mon noble père, vous vous lamentez en vain; les tribuns ne vous entendent point; il n'y a personne ici, et vous racontez vos douleurs à une pierre.

## TITUS.
Ա՛խ, Լուցիոս, թոյլ տուր քո եղբայրներին արդարացնել տարէց տրիբուններ, ես մի անգամ էլ աղերսում եմ ձեզ։

Lucius, laisse-moi plaider la cause de tes frères. Respectables tribuns, je vous conjure encore une fois.

LUCIUS.

Բարեգութ հայր իմ, ոչ մի տրիբուն քեզ չի ունկնդրում։
Mon vénérable père, il n'y a pas de tribuns pour vous entendre.

TITUS.

Ա՛խ, հոգ չէ, որդիս, եթէ լսէին, Ինձ չէին տալու կարեւորութիւն կամ եթէ տային կարեւորութիւն, Նրանք ինձ երբեք չէին կարեկցի, բայց պէտք է խօսեմ, Թէկուզ ապարդիւն։ Ահա թէ ինչու իմ վիշտն եմ պատմում միայն քարերին, Թէեւ չեն կարող իմ տառապանքը քարերն ամոքել, Բայց այդ քարերը աւելի լաւ են, քան տրիբունները, Քանզի իմ խօսքը նրանք չեն կտրում։ Երբ լաց եմ լինում, իմ ոտքերի տակ քարերն հեզօրէն Իմ արցունքներն են մէկ-մէկ ժողովում, Ասես լալիս են նրանք էլ ինձ հետ։ Եւ եթէ նրանք խիստ շքեղափայլ զգեստ հագնէին, Չէր կարող Հռոմը նրանց հաւասար տրիբուններ գտնել։ Քարը փափուկ է մեղրամոմի պէս, Բայց տրիբունները կարծր են աւելի, քան թէ քարերը, Քարերը համր են, չեն թշնամանում, Տրիբուններն իրենց չար լեզուով մահուան վճիռ են արձակում մարդկանց։ Բայց ինչո՞ւ ես դու սուրդ մերկացրել։
N'importe: s'ils m'entendaient, ils ne feraient pas attention à moi; ou bien, comme je leur suis entièrement inutile, ils m'entendraient sans avoir pitié de moi: c'est pourquoi je raconte mes douleurs aux pierres; si elles ne peuvent répondre à mes plaintes, du moins sont-elles en quelque sorte meilleures que les tribuns; elles n'interrompent point mon douloureux récit: quand je pleure, elles reçoivent humblement mes larmes et semblent pleurer avec moi. Si elles étaient vêtues de longues robes de deuil, Rome n'aurait point de tribun qui leur fût comparable. Oui, la pierre est molle comme la cire; les tribuns sont plus durs que les rochers: la pierre est silencieuse et ne blesse point; les tribuns avec leur langue condamnent les gens à mort: mais pourquoi te vois-je avec ton épée nue?

*[Titus stands.]*

LUCIUS.

Իմ եղբայրներին փորձեցի սրով մահից ազատել Եւ դրա համար դատապարտուած եմ ցմահ աքսորի։
C'était pour arracher à la mort mes deux frères; et, pour cette tentative, les juges ont prononcé contre moi la sentence d'un bannissement éternel.

*[Marcus enters, leading Lavinia.]*

TITUS.

Օ՛ երջանիկ մարդ, քո հանդէպ նրանց գութն է շարժուել։ Իմ յիմար Լուցիոս, միթէ՞ չես տեսնում, որ անապատ է հռոմը դարձել, այստեղ ապրում են վագրերը միայն, նրանց որս է պէտք, եւ հռոմն ուրիշ որս չի հայթայթում մեզանից բացի։ Ի՜նչ երջանիկ ես, որ աքսորում են գազանները քեզ։ Այս ո՞վ է գալիս մեր Մարկոսի հետ։ Մտնում են Մարկոսն ու Լաւինիան։
Que tu es heureux! Ils t'ont traité avec amitié. Quoi! Lucius insensé, ne vois-tu pas que Rome n'est qu'un repaire de tigres? Il faut aux tigres une proie; et Rome n'en a point d'autre à leur offrir que moi et les miens. Ah! que tu es heureux d'être banni loin de ces tigres dévorants! Mais qui vient ici avec notre frère Marcus?

MARCUS.
Տիտոս, պատրաստիր տարէց աչքերդ, որպէսզի ողբան, Եթէ չեն կարող, ապա ծուատիր քո ազնիւ սիրտը, Մահացու վիշտ եմ բերում քեզ համար, քո ծերութեանը։
Titus, prépare tes nobles yeux à pleurer, sinon il faudra que ton coeur se brise de douleur; j'apporte à ta vieillesse un chagrin dévorant.

TITUS.
Ի՞նձ մահացու վիշտ։ Ցոյց տուր այդ վիշտը։
Me dévorera-t-il? Alors, montre-le-moi.

MARCUS.
Սա քո աղջիկն էր։
Ce fut là ta fille.

TITUS.
Հիմա էլ, Մարկոս, իմ աղջիկն է նա։
Oui, Marcus, et elle l'est encore.

LUCIUS.
Նրա հայեացքը սպանում է ինձ։
Malheureux que je suis! cet objet me tue.

TITUS.
Թուլակամ տղայ, բարձրացիր, նայիր դժբախտ քրոջդ։ Խօսիր, Լաւինիա, ի՞նչ նզովեալ ձեռք քեզ թողեց անձեռ, Ո՞ր խելագարն էր՝ ջուր աւելացրեց փոթորկուող ծովին Կամ չոր ճիւղերի մի կապոց գցեց այրուող Տրոյային։ Քո գալուց առաջ վիշտս բարձրացաւ, Եւ Նեղոսի պէս այժմ ափերից նա դուրս է յորդում։ Օ՜ ինձ սուր տուէք, ես պէտք է կտրեմ իմ երկու ձեռքը, Քանզի կռիւը, որ օր ու գիշեր Նրանք մղեցին յանուն Հռոմի, Հռոմն անարգեց։ Ինձ խնամելով՝ նրանք իմ վշտի դայակը դարձան, Նրանց աղօթքներն աստուած չլսեց, Նրանց նուիրեալ ծառայութիւններն անցան ապարդիւն, Այժմ նրանցից ես աղերսում եմ մի ծառայութիւն՝ Թող մի ձեռքս օգնի միւսը կտրելու։ Աղջիկս, լաւ է, որ ձեռքեր չունես, Քանզի ձեռքերի ծառայութիւնը Հռոմն անարգեց։
Enfant au coeur faible, relève-toi et regarde-la. Parle, ma Lavinia, quelle main maudite t'envoie ainsi mutilée devant les regards de ton père? Quel insensé va porter de l'eau à l'Océan, ou jeter du bois dans Troie en flammes? Avant que je t'eusse vue, ma douleur était au comble, et maintenant, comme le Nil, elle ne connaît plus de limites. Donnez-moi une épée, je trancherai mes mains aussi, car elles ont combattu pour Rome, et combattu en vain; elles ont nourri ma vie et prolongé mes jours pour cet horrible malheur: je les ai tendues en vain dans une prière inutile et elles ne m'ont servi qu'à des usages sans résultat, maintenant tout le service que je leur demande c'est que l'une m'aide à couper l'autre. Il est bon, Lavinia, que tu n'aies plus de mains, car il est inutile d'en avoir pour servir Rome.

LUCIUS.

Խօսի՛ր, ազնիւ քոյր, ո՞վ է քեզ տանջել։

Parle, chère soeur; dis qui t'a ainsi martyrisée?

MARCUS.

Նրա մտքի գործիքն հիասքանչ, Որ մի հաճելի պերճախօսութեամբ Արտայայտում էր խոհերը նրա, Պոկուել է հիմա իր սուրբ վանդակից, Որտեղ քաղցրաձայն թռչունի նման ունկ կախարդելով՝ Իր քաղցրանուագ երգն էր դայլայլում։

Hélas ce charmant organe de ses pensées, qui les exprimait avec une si douce éloquence, est arraché de sa jolie cage creuse où, comme un oiseau mélodieux, il chantait ces sons agréables et variés qui ravissait toutes les oreilles!

LUCIUS.

Նրա փոխարէՆ խօսիր, հօրեղբա՛յր։ Ո՞ւմ սեւ գործն է սա։

Toi, parle donc pour elle; dis, qui a commis cette action.

MARCUS.

Այսպէս մոլորուածես նրան գտայ այս անտառի մէջ, Որտեղ ուզում էր ինքը թաքնուել այն եղնիկի պէս, Որ անբուժելի վէրքով է խոցուել։

Je l'ai trouvée ainsi errante dans la forêt, cherchant à se cacher, comme la biche timide qui a reçu une blessure incurable.

TITUS.

Սա իմ եղնիկն էր։ Ով վիրաւորեց անմեղ աղջկաս, Նա ինձ աւելի շեշտակի խոցեց, քան սուրը մահուան։ Եւ ես նման եմ այն դժբախտ մարդուն, Որ կանգնած ժայռին, շուրջը ջրերի անապատն անծայր՝ Տեսնում է՝ ինչպէս ծովն է բարձրանում ալիք առ ալիք Եւ սպասում է, թէ երբ դաւադիր հսկայ մի կոհակ Կուլ կը տայ իրեն՝ տանելով ծովի ընդերքն աղահամ։ Այս ճանապարհով իմ դժբախտ որդիք մահուան գնացին, Այստեղ կանգնած է իմ միւս տղան՝ աքսորեալ մի մարդ, Ազնիւ եղբայրս, որ հեկեկում է իմ վշտի վրայ, Բայց իմ սիրելի, դժբախտ Լաւինիան, անչափ սիրելի, Քան թէ իմ հոգին, պատճառում է ինձ աւելի խոր ցաւ։ Եթէ տեսնէի քո նկարն այսպէս, Ես կը ցնորուէի։ Ի՞նչ պիտի անեմ, Երբ տեսնում եմ քո ծաղկուն մարմինը այսպէս աւերուած։ Դու ձեռքեր չունես, որ արցունքներդ սրբես աղեկէզ, Դու լեզու չունես, որ չարագործի անունն ինձ ասես, Քո ամուսինը մեռել է, դու՛ստրս։ Եւ եղբայրներդ՝ Այս սպանութեանն ամբաստանակից, այլեւս չկան։ Ա՛խ, նայի՛ր, Մարկոս, ա՛խ, նայի՛ր, Լուցիոս, Երբ եղբայրների անունն ասացի, Թարմ արցունքների շիթեր յորդեցին նրա այտերին, Ասես մեղրացօղ իջաւ շուշանի թերթերին թօշնած։

Elle était ma biche chérie, et celui qui l'a blessée m'a fait plus de mal que s'il m'eût étendu mort. Maintenant je suis comme un homme sur un rocher environné d'une vaste étendue de mer, et qui voit la marée monter vague après vague, attendant le moment où un flot ennemi l'engloutira dans ses entrailles salées. C'est par ce chemin que mes malheureux fils ont marché à la mort: voilà ici mon autre fils condamné à l'exil, et voilà mon frère, qui pleure mes malheurs: mais de tous mes maux, celui qui porte à mon âme le coup le plus cruel, c'est le sort de ma chère Lavinia, qui m'est plus chère que mon âme. Si j'avais vu ton portrait dans cet état affreux, cela aurait suffi pour me rendre fou: que deviendrai-je, lorsque je te vois ainsi en personne dans cette horrible situation? Tu n'as plus de mains pour essuyer tes larmes, ni de langue pour dire qui t'a ainsi martyrisée: ton époux est mort, et, pour sa mort, tes frères sont condamnés et exécutés à l'heure qu'il est. Vois, Marcus: ah! Lucius, mon fils, regardez-la. Quand j'ai nommé ses frères, de nouvelles larmes ont coulé sur ses

joues comme une douce rosée sur un lis cueilli et déjà flétri.

MARCUS.

Գուցէ լալիս է այն բանի համար, Որ եղբայրներն են սպանել ամուսնուն, Կամ գուցէ գիտէ, որ այդ գործի մէջ նրանք մեղք չունեն։

Peut-être pleure-t-elle parce qu'ils ont tué son mari: peut-être aussi parce qu'elle les sait innocents.

TITUS.

Եթէ նրանք են իրաւ սպանել ազնիւ ամուսնուդ, Դու ուրախացիր, քանզի օրէնքը պատժել է նրանց։ Ո՛չ, ո՛չ, մեղք չունեն նրանք այդ կեղտոտ, զզուելի գործում, Վկայ է վիշտը, որ ցոյց է տալիս նրանց խեղճ քոյրը։ Ազնիւ Լաւինիա, թոյլ տուր համբուրել քո շրթունքները, Կամ նշան արա, թէ ես ինչ ձեւով քո վիշտն ամոքեմ։ Ուզո՞ւմ ես, որ քո եղբայր Լուցիոսը, քո հօրեղբայրը, Քո հայրը եւ դու, բոլորս նստենք մի աղբիւրի մօտ Եւ խոնարհուելով ջրերի վրայ՝ տեսնենք ինչպէս է Ցաւն իր կնիքը գրել մեր դէմքին, Ճիշտ այն դաշտի պէս, Որն աւերուել է հեղեղի բերած գարշելի տիղմից, Ուզո՞ւմ ես երկար նայենք աղբիւրին, Մինչեւ որ կորցնի իր յստակութեան մաքուր ճաշակը, Եւ մեր յորդահոս տաք արցունքներից Աղբիւրը դառնայ աղաջրի փոս։ Կամ թէ ուզո՞ւմ ես ձեռքներս կտրենք, ինչպէս որ քոնն է, Կամ թէ զայրոյթով պոկենք մեր լեզուն, Եւ մենք համրացած մեր գարշ օրերի մնացորդը ծախսենք, Ի՞նչ պիտի անենք։ Օ՛ թող մեզանից իւրաքանչիւրը, Ով լեզու ունի, այնպիսի ահեղ պատուհաս խորհի, Որ մեզնից յետոյ եկող ժամանակն ապշահար նայի մեր գործի վրայ։

Si ce sont eux qui ont tué ton époux, réjouis-toi alors de ce que la loi a vengé sa mort. Non, non, ils n'ont point commis un forfait aussi atroce: j'en atteste la douleur que montre leur soeur. Ma chère Lavinia, laisse-moi baiser tes lèvres; ou fais-moi comprendre par quelques signes comment je pourrais te soulager. Veux-tu que ton bon oncle, et ton frère Lucius, et toi, et moi, nous allions nous asseoir autour de quelque fontaine, tous, les yeux baissés vers son onde, pour voir comment nos joues sont tachées par les larmes, semblables à des prairies encore humides du limon qu'a laissé sur leur surface une inondation? Irons-nous attacher nos regards sur la fontaine jusqu'à ce que la douceur de ses eaux limpides soit altérée par l'amertume de nos larmes, ou bien veux-tu que nous coupions nos mains comme on a coupé les tiennes: ou que nous tranchions nos langues avec nos dents, et que nous passions, sans autre voix que nos signes muets, le reste de nos exécrables jours? Que veux-tu que nous fassions? Nous, qui possédons nos langues, imaginons quelque plan de misères plus horribles pour étonner l'avenir de nos désastres.

LUCIUS.

Սիրելի հայր իմ, բա՛ւ է արտասուես, Վիշտդ տեսնելով՝ իմ անբախտ քոյրն է լալիս ու ողբում։

Mon tendre père, cessez vos pleurs: car voyez comme votre désespoir fait pleurer et sangloter ma pauvre soeur.

MARCUS.

Համբերիր, ազնիւ իմ եղբօր աղջիկ, Իմ բարի Տիտոս, աչքերդ սրբիր։

Prends patience, chère nièce. Bon Titus, sèche tes yeux.

TITUS.

Մարկոս, Մարկոս, եղբա՛յր, ես գիտեմ, Որ քո թաշկինակը՛ չի չորացնի իմ արցունքները, Քանզի դու, խեղճ մարդ, այն հեղեղել ես քո արցունքներով։

Marcus, Marcus! mon frère, je sais bien que ton mouchoir ne peut plus boire une seule de mes larmes; car toi, homme infortuné, tu l'as tout trempé des tiennes.

LUCIUS.
Ա՛խ, իմ Լաւինիա, ես պէտք է սրբեմ քո թաց այտերը։
Ah! ma chère Lavinia, je veux essuyer tes joues.

TITUS.
Մա՛րկ, Մարկո՛ս, նայի՛ր, ես հասկանում եմ նշանները նրա։ Եթէ Լաւինիան լեզու ունենար, Կ'ասէր եղբօրն այն, ինչ քեզ ասացի. Եղբօր թաշկինակն հէնց իր սեփական արցունքով թրջուած, Չի կարող սրբել քրոջ այտերը այսքան ցաւալի։ Մենք կարեկցում ենք մեր խեղճ աղջկան այսպէս վշտահար, Բայց այս զգացմունքն այնքան հեռու է սիրտ ամոքելուց, Ինչպէս որ Լիմբոն՝ երջանկութիւնից։ Մտնում է Ահարոնը։
Vois, Marcus, vois; je comprends ses signes; si elle avait une langue pour parler, elle dirait en ce moment à son frère, ce que je viens de te dire; que le mouchoir tout trempé des pleurs de son frère ne peut plus servir à essuyer ses joues humides. O quelle sympathie de malheurs! aussi éloignés de tout remède que les limbes le sont du ciel!

*[Aaron enters.]*

AARON.
Անդրոնիկոս, իմ տէրը՝ կայսրը, այս խօսքն է ասում. Եթէ սիրում ես քո տղաներին, Թող որ Լուցիոսը, Մարկոսը կամ դու, ծերունի Տիտոս, Կամ թէ ձեզանից որեւէ մէկը իր ձեռքը կտրի, ուղարկի նրան, Որի դիմաց նա կը վերադարձնի քո տղաներին, Եւ դա կը լինի միակ փրկագինն իրենց յանցանքի։
Andronicus, l'empereur mon maître m'envoie te dire, que si tu aimes tes fils, vous pouvez, soit Marcus, soit Lucius, soit toi-même, vieillard, quelqu'un de vous, enfin, vous couper la main et l'envoyer au roi; qu'en retour il te renverra tes deux fils vivants, et que ce sera la rançon de leur crime.

TITUS.
Օ՛, բարի՛, կա՛յսր։ Օ՛ իմ սիրելի՛ ազնիւ Ահարոն, Երգե՞լ է, արդեօք, ագռաւը այնպէս, Ինչպէս արտոյտն է երգում նոր ծագող արեւի լոյսը։ Ես ամբողջ հոգով ուրախ եմ կայսրին իմ ձեռքն ուղարկել։ Օգնի՛ր, Ահարոն, որ ձեռքս կտրեմ։
O généreux empereur! ô bon Aaron! Le noir corbeau a-t-il donc jamais fait entendre des accents aussi semblables à ceux de l'alouette, qui nous avertit par ses chants du lever du soleil? De tout mon coeur, je consens à envoyer ma main à l'empereur; bon Aaron, veux-tu m'aider à la couper?

LUCIUS.
Սպասի՛ր, հայր իմ, քո ազնիւ ձեռքը, Որ տապալել է բազում թշնամիք, պէտք չէ ուղարկել, Իմ ձեռքը կտրէք, որ եղբայրներս տուն վերադառնան, Ջահէլութիւնս արեան կորուստը շատ հեշտ կը տանի, Թող իմ արիւնը իմ եղբայրներին ազատի մահից։
Arrêtez, mon père; non, vous n'enverrez point votre main, cette main glorieuse qui a terrassé tant d'ennemis, la mienne suffira; ma jeunesse a plus de sang à perdre que vous; et ce sera ma main qui servira à sauver la vie de mes frères.

MARCUS.

Օ՛, ձեր ձեռքերից որը՛ Հռոմին պաշտպան չի կանգնել եւ չի բարձրացրել կացինն արիւնոտ՝ Մահ դրոշմելով թշամիների սաղաւարտներին։ Օ՛ ձեր երկուսի ձեռքերը ունեն մեծ արժանիքներ, Ձեռքն իմ դեռեւս ոչինչ չի արել, Եւ թող նա լինի փրկագին նրանց, Դրանով մի սուրբ գործ կը կատարեմ։

Laquelle de vos mains n'a pas défendu Rome, et brandi la hache d'armes sanglante, écrivant la destruction sur le casque des ennemis? O! vous n'avez point de main qui ne soit illustrée par de rares exploits, la mienne est restée oisive; qu'elle serve aujourd'hui de rançon pour arracher mes neveux à la mort; je l'aurai conservée alors pour un digne usage.

AARON.

Արա՛գ որոշէ՛ք ո՞ւմ ձեռքն էք կտրում, Թէ ոչ՝ կարող են նրանք աւելի շուտափոյթ մեռնել, Քան թէ կը ստանան իրենց ներումը։

Allons, convenez promptement; quelle main sera sacrifiée, de crainte qu'ils ne meurent, avant que leur pardon arrive.

MARCUS.

Ի՛մ ձեռքը կտրէք։

Ce sera ma main.

LUCIUS.

Երդւում եմ, քոնը չպէտք է կտրել։

Non, par le ciel, ce ne sera pas la vôtre.

TITUS.

Թողէ՛ք ձեր վէճը։ Չոր խոտն են պոկում, ուրեմն պոկէք չորացած ձեռքն իմ։

Mes amis, ne vous disputez plus; des herbes si flétries sont bonnes à arracher, et ce doit être la mienne.

LUCIUS.

Սիրելի՛ հայր իմ, եթէ իսկապէս ես քո որդին եմ, Թոյլ տուր ինձ փրկել իմ եղբայրներին մահուան ճանկերից։

Mon tendre père, si l'on doit me croire ton fils, laisse-moi racheter mes deux frères de la mort.

MARCUS.

Երդւում եմ մեր հօր սուրբ յիշատակով, Երդւում եմ մեր մօր քնքշանքներով, Թող ապացուցեմ իմ եղբայրական սէրը քո հանդէպ։

Pour l'amour de notre père, au nom de l'affection de notre mère, laisse-moi te prouver en ce moment la tendresse d'un frère.

TITUS.

Դեհ, դուք որոշէք, ձեռքս չեմ կտրում։

Arrangez-vous entre vous; je veux bien épargner ma main.

LUCIUS.

Ուրեմն ես գնամ կացնի ետեւից։

Je vais chercher une hache.

MARCUS.
Բայց պէտք է կացինը ես օգտագործեմ։
Mais c'est à moi qu'elle servira.

*[Lucius and Marcus exit.]*

TITUS.
Մօտ եկ, Ահարոն, ես պէտք է խաբեմ նրանց երկուսին, Օգնիր ինձ քո ձեռքով եւ փոխարէնը ձեռքս կը ստանաս։
Approche, Aaron, je veux les tromper tous deux; prête-moi ta main, et je vais te donner la mienne.

AARON.
Եթէ կոչւում է սա խաբէութիւն, Ուրեմն կարող եմ կոչուել ազնիւ մարդ, Եւ երբեք մարդկանց, քանի դեռ ողջ եմ, չեմ խաբի այսպէս, Բայց ուրիշ ձեւով ես քեզ կը խաբեմ, Եւ չանցած կէս ժամ՝ այդ մասին ինքդ կ'իմանաս, Տիտոս։
Si cela s'appelle tromper, je veux être honnête, et ne jamais tromper ainsi les hommes, tant que je vivrai. Mais je te tromperai d'une autre manière, et tu le verras avant qu'il se passe une demi-heure.

*[Aaron cuts off Titus' hand as Lucius and Marcus re-enter.]*

TITUS.
Թողէք ձեր վէճը, ինչ պիտի լինէր՝ արդէն կատարուեց։ Բարի Ահարոն, տուր ձեռքս կայսրին Եւ ասա նրան, որ այս կտրուած ձեռքն է պաշտպանել Նրան բազմաթիւ փորձութիւններից։ Աղաչիր նրան, որ ձեռքս թաղի, Թէեւ կարող էր այն արժանանալ ինչ-որ մեծ բանի։ Գալով տղաներիս՝ ասա՛, որ նրանց ես համարում եմ Միմի ադամանդ, ես էժան առայ, Բայց նրանք թանկ են, օ՜ չափազանց թանկ, Քանզի գնել եմ իմ սեփականը։
Maintenant cessez votre dispute; ce qui devait être est fait. Bon Aaron, va, donne ma main à l'empereur. Dis-lui que c'est une main qui l'a protégé contre mille dangers; qu'il l'enterre; elle a mérité davantage; qu'elle obtienne du moins cela. Quant à mes fils, dis-lui que je les regarde comme des joyaux achetés à peu de frais, et cependant bien chèrement aussi, puisque je n'ai racheté que ce qui est à moi.

AARON.
Գնում եմ, Տիտոս, ձեռքիդ փոխարէն Շուտով կը տեսնես քո տղաներին։ [Aside.] Ուզում եմ ասել՝ նրանց գլուխները։ Օ՜ գիրանում եմ սրիկայութեանս չարագործ մտքից, Թող յիմարները բարութիւն անեն, Թող մխիթարուեն ուղղամիտ մարդիկ գթասիրութեամբ, Իսկ դու, Ահարոն, սեւացրու հոգիդ քո սեւ դէմքի պէս։
Je pars, Andronicus; et, au prix de ta main, attends-toi à voir incessamment tes fils t'être rendus. [Aside.] Ieurs têtes, je veux dire. Oh! comme cette scélératesse me nourrit par sa seule idée! Que les fous fassent du bien, et que les beaux hommes cherchent à plaire; Aaron veut avoir l'âme aussi noire que son visage.

*[Aaron exits.]*

TITUS.
Օ՛, միակ ձեռքս եմ բարձրացնում երկինք՝ Թեքելով այս թոյլ աւերակն հողին, Եթէ կայ մի ուժ, որ դժբախտ մարդու հորդ արցունքներից սրտաշարժւում է, Կանչում եմ նրան։ [To Lavinia.] Ի՞նչ, դու ուզում ես ծո՞ւնր իջնել ինձ հետ, խոնարհուի՛ր, դուստրս։ Մեր աղօթքները աստուած կը լսի, Մեր հառաչներից կը մթագնի երկնակամարը, Եւ կ'աղօտանայ մեր հառաչների մուժով արեւը, Այսպէս երբեմն իր հալուող գրկում ամպն է թաքցնում ոսկեայ արեւին։
Je lève cette main qui me reste vers le ciel, et je fléchis jusqu'à terre ce corps caduc; s'il est quelque puissance qui prenne pitié des larmes des malheureux, c'est elle que j'implore. Quoi, veux-tu te prosterner avec moi? Fais-le, chère âme; le ciel entendra nos prières, ou bien, avec nos soupirs, nous obscurcirons la voûte du ciel, et nous ternirons la face du soleil par une vapeur comme font quelquefois les nuages quand ils le pressent contre leur sein humide.

MARCUS.
Օ՛ եղբա՛յր, խորհիր ողջամտօրէն Եւ քեզ մի՛ գցիր յուսահատութեան անդունդը խորունկ։
Mon frère, demande des choses possibles, et ne te jette point dans cet abîme de chagrins.

TITUS.
Միթէ՞ իմ վիշտը մի խոր անդունդ չէ, Թող տխրութիւնս այսպիսի խորունկ մի անդունդ լինի։
Mon malheur n'est-il donc pas un abîme, puisqu'il n'a point de fond? que ma douleur soit donc sans fond comme lui.

MARCUS.
Թող կառավարուի բանականութեամբ վիշտը քո հոգու։
Mais pourtant que ta raison gouverne ta douleur.

TITUS.
Օ՛ եթէ լինէր աղէտների մէջ բանականութիւն, Ես գուցէ այնժամ կաշկանդէի իմ տառապանքները, Բայց երբ երկինքն է լալիս ցաւագին, միթէ՞ չի ծածկւում երկիրը ջրով, Երբ քամիներն են ոռնում խելագար միթէ՞ չի մրրկում ծովը վիթխարի, Եւ միթէ՞ ծովն իր այտուցուած դէմքով չի ահաբեկում դէմքը երկնքի, Իսկ դու ուզում ես այս աղմկալի անմտութեան մէջ Գտնել որեւէ բանականութի՞ւն։ Ես ծովն եմ, եղբա՛յր, լսո՞ւմ ես նրա հառաչանքները, Ծովն հեկեկում է, ինչպէս երկինքը, եւ ես երկիրն եմ, Եւ ծովս էլ պէտք է նրա հառաչով խիստ ալեկոծուի, Պէտք է երկիրն իմ հեղեղուի-կործուի նրա անդադար արցունքների մէջ, Ահա թէ ինչու ընդերքս նրա վիշտը չի կարող երբեք թաքցնել, Բայց պիտի փսխեմ հարբեցողի պէս տառապանքներս։ Թող ինձ, քանզի ով շատ է կորցնում, Նա դառն խօսքով սիրտն է ամոքում։
S'il était quelque raison pour mes misères, je pourrais contenir ma souffrance dans quelques bornes. Quand le ciel pleure, la terre n'est-elle pas inondée? Si les vents sont en fureur, la mer ne devient-elle pas furieuse, menaçant le firmament de son sein gonflé? Et veux-tu avoir une raison de ce tumulte? Je suis la mer; écoute la violence de ses soupirs. Ma fille est le firmament en pleurs, et moi la terre; il faut donc que la mer soit émue de ses soupirs; il faut donc que ma terre submergée et noyée par ses larmes continuelles devienne un déluge. Mes entrailles ne peuvent contenir mon désespoir; il faut donc que, comme un ivrogne, je le vomisse. Ainsi, laisse-moi en liberté, ceux qui perdent doivent avoir la liberté de se soulager le coeur par la méchanceté de leur langue.

[A Messenger enters, carrying a basket with two heads and a hand in it.]

MESSENGER.
Անդրոնիկոս, վատ վճարեցին այս ձեռքի համար, Որ ուղարկեցիր կայսրին վեհափառ։ Ահա գլուխները քո արժանաւոր երկու տղաների, Ահա քո ձեռքը՝ արհամարհանքով ետ են ուղարկել, Զուարճացել են նրանք քո վշտով, ծաղրել են նրանք քո որոշումը։ Ես աւելի եմ քո վիշտը ողբում, Քան երբ յիշում եմ հօրս մեռնելը։
Andronicus, tu es mal payé de cette noble main que tu as envoyée à l'empereur: voici les têtes de tes deux braves fils, et voilà ta main qu'on te renvoie avec mépris. Tes chagrins vont faire leur amusement, et ils se moquent de ton courage. Je souffre plus de penser à tes maux que du souvenir de la mort de mon père.

[Messenger exits.]

MARCUS.
Արդ, Սիցիլիայում թող Էտնան սառչի, Եւ թող փոխարկուի սիրտս մշտագոյ այրուող դժոխքի։ Այս աղէտները աւելի մեծ են, քան թէ կարող է աշխարհը ծնել, Թեթեւանում ես, երբ լաց են լինում քեզ հետ քո վիշտը։ Բայց վիշտն անարգուած՝ մահ է կրկնակի։
Maintenant que le bouillant Etna s'éteigne en Sicile, et que mon coeur nourrisse la flamme éternelle d'un enfer! C'est trop de maux pour pouvoir les supporter! Pleurer avec ceux qui pleurent soulage un peu, mais un chagrin qu'on insulte est une double mort.

LUCIUS.
Ա՛խ, նրա հայեացքն ինչքա՞ն պէտք է այսպէս խոշտանգի, Մինչդեռ ատելի կեանքի վախճանը չի էլ երեւում։ Եւ միթէ՞ մահը թոյլ կը տայ կեանքին անունն իր կոչել Երբ կեանքը չունի ոչինչ աւելի, քան թէ շնչելը։
Quoi! comment se peut-il que ce spectacle me fasse une blessure si profonde, et que l'odieuse vie ne succombe pas? Se peut-il que la mort permette à la vie d'usurper son nom, quand la vie n'a plus d'autre bien que le souffle?

[Lavinia kisses Titus.]

MARCUS.
Աւա՛ղ, իմ խեղճ սի՛րտ, այս մեղմ համբոյրը սփոփանք չունի, Ինչպէս պաղ ջուրը՝ ցրտահար օձին։
Hélas! pauvre coeur, ce baiser est sans consolation, comme l'eau glacée pour un serpent transi par la faim.

TITUS.
Ե՞րբ այս ահաւոր սոսկալի քունը վախճան կ'ունենայ։
Quand finira cet effrayant sommeil?

MARCUS.
Բա՛ւ է քեզ խաբես, մեռիր դու, Տիտոս։ Ո՛չ, դու քուն չունես, Նայիր քո որդոց խեղճ գլուխներին, Նայիր քո կտրած, ռազմասէր ձեռքին, Նայիր ցաւատուած քո հէգ աղջկան, Այստեղ է ահա աքսորեալ որդիդ, որ զարհուրելի Այս տեսարանից գունատուել է խիստ, Այստեղ է ահա եւ քո եղբայրը, Որն ասես լինի քարէ մի արձան՝ սառն ու անզգայ։ Ա՛խ, ես չեմ կարող այլեւս նայել քո տառապանքին, Պոկիր արծաթեայ մազերդ

մէկ -մէկ եւ ատամներով կրծիր-բզկտիր քո միւս ձեռքը, Թող սարսափելի այս տեսարանը Փակի մեր դժբախտ աչքերն յաւիտեան։ Այժմ ճիշտ ու ճիշտ ժամն է փոթորկի, Ինչո՞ւ ես այսպէս հանդարտուել, եղբա՛յր։
Adieu, maintenant, toute illusion: meurs, Andronicus, tu ne dors pas: vois les têtes de tes deux fils, ta main guerrière tranchée, ta fille mutilée, ton autre fils banni, pâle et inanimé à cet horrible aspect; et moi, ton frère, froid et immobile comme une statue de pierre. Ah! je ne veux plus chercher à modérer ton désespoir: arrache tes cheveux argentés, ronge de tes dents ton autre main, et que cet affreux spectacle ferme enfin tes yeux trop infortunés! Voilà le moment de t'emporter: pourquoi restes-tu calme?

TITUS.
Հա՛, հա՛, հա՛։
Ha, ha, ha.

MARCUS.
Ինչո՞ւ ես, եղբա՛յր, այսպէս ծիծաղում, Այժմ ծիծաղելն անպատշաճ է խիստ։
Pourquoi ris-tu? ce n'est guère le moment.

TITUS.
Միթէ՞ չես տեսնում, որ ցամաքել են իմ արցունքները, Միթէ՞ չես տեսնում՝ վիշտն է թշնամիս, Եւ նա ուզում է այժմ գողանալ իմ թաց աչքերը Եւ կուրացնել նրանց հարկատու հորդ արցունքներով, Այժմ ես ինչպէ՞ս վրէժխնդրութեան քարայրը գտնեմ, Թւում է, եղբա՛յր, այս գլուխները խօսում են ինձ հետ Եւ ինձ սպառնում, որ չճաշակեմ երջանկութիւնը այնքան ժամանակ, Քանի դեռ բոլոր այս աղէտները չեմ վերադարձնի Կոկորդը նրանց, ովքեր սարքեցին այս պատուհասը։ Գնանք, ես պէտք է խորհեմ իմ գալիք գործերի մասին։ Դո՛ւք, դժբախտ մարդիկ, իմ շուրջ հաւաքուէք, Որպէսզի ձեզնից իւրաքանչիւրին ես հոգով երդւեմ, Եւ ես երդւում եմ, որ վրէժ կ'առնեմ ձեր վշտի համար։ Սիրելի եղբայր, այս գլուխներից մէկը վերցրու, Իսկ ես այս ձեռքով միւսը կը բռնեմ։ Լաւինիա, դու էլ անելիք ունես՝ Քո ատամներով, սիրելի՛ աղջիկ, այս ձեռքը բռնիր։ Գալով քեզ, Լուցիոս, դու աքսորեալ ես, դու պէտք է գնաս, Գնա, սիրելի՛ս, դու գոթերի մօտ, բանակ ժողովիր։ Եթէ սիրում ես քո դժբախտ հօրը, ես չեմ կասկածում, Եկ քեզ համբուրեմ, գործն ստիպում է, որ մենք բաժանուենք։ Գնում են Տիտոսը, Մարկոսը եւ Լաւինիան։
Il ne me reste plus une seule larme à verser; d'ailleurs, ce désespoir est un ennemi qui veut envahir mes yeux humides, et les rendre aveugles en les forçant de payer le tribut de leurs larmes. Par quel chemin alors trouverais-je la caverne de la vengeance? car ces deux têtes semblent me parler et me menacer de ne jamais entrer dans le séjour du bonheur, jusqu'à ce que tous ces malheurs retombent sur ceux qui les ont commis. Allons, voyons quelle tâche j'ai à remplir. Vous, tristes compagnons, entourez-moi, afin que je puisse me tourner vers chacun de vous, et jurer à mon âme de venger vos affronts. Le voeu est prononcé. Allons, mon frère, prends une tête, et moi je porterai l'autre dans cette main. Lavinia, tu seras employée à cette oeuvre: porte ma main, chère fille, entre tes dents. Toi, jeune homme, va-t'en, éloigne-toi de ma vue: tu es banni, et tu ne dois pas rester ici; cours chez les Goths, lève parmi eux une armée; et si tu m'aimes, comme je le crois, embrassons-nous et séparons-nous, car nous avons beaucoup à faire.

*[All exit save Lucius.]*

## LUCIUS.

Մնա՛ս բարով, հայր իմ, ազնիւ Անդրոնիկոս, Ամենադժբախտ մարդկանցից մէկը, ով երբեւիցէ ապրեց Հռոմում։ Մնա՛ս բարով, գոռոզ Հռոմ վերստին, Լուցիոսը կը գայ, Պատանդ է թողնում իր կեանքից խիստ թանկ սիրելի մարդկանց։ Մնա՛ս բարով, քոյր իմ, ազնիւ Լաւինիա, Օ՜ թէ լինէիր դու առաջուայ պէս։ Բայց, աւա՜ղ, Լուցիոսն ու խեղճ Լաւինիան Ապրում են հիմա մոռացութեան մէջ, վշտերի գրկում։ Եթէ ողջ մնամ, Ես ձեր բոլորի վրէժը կ'առնեմ, Կը ստիպեմ գոռոզ Սատուրնինոսին ու իր կայսրուհուն՝ Գթութիւն հայցեն հպարտ Հռոմի դարպասների տակ, Ինչպէս Տարկուինոսն ու իր թագուհին։ Այժմ գնում եմ ես գոթերի մօտ, նրանցից պէտք է մի բանակ կազմեմ, Որպէսզի վրէժ առնեմ Հռոմից ու նրա կայսրից։

Adieu, Andronicus, mon noble père, l'homme le plus malheureux qui ait jamais vécu dans Rome! Adieu, superbe Rome: Lucius laisse ici, jusqu'à son retour, des gages plus chers que sa vie. Adieu, Lavinia, ma noble soeur; ah! plût aux dieux que tu fusses ce que tu étais auparavant! Mais à présent Lucius et Lavinia ne vivent plus que dans l'oubli et dans des chagrins insupportables. Si Lucius vit, il vengera vos outrages et forcera le fier Saturninus et son impératrice à mendier aux portes de Rome, comme autrefois Tarquin et sa reine. Je vais chez les Goths, et je lèverai une armée pour me venger de Rome et de Saturninus.

*[Exits.]*

]0[

## ACT III. SCENE II.

Rome. A banquet at Titus' house. Titus, Marcus, Lavinia and Young Lucius all enter.]

## TITUS.

Սեղանն է պատրաստ, չուտենք աւելի, քան պահանջւում է, Որպէսզի պահենք մեր ողջ ուժերը՝ Վրէժ առնելու մեր այս դառնագին վշտերի համար։ Մարկոս, դու քանդիր մեր այս վշտերի անծայր կծիկը, Քո եղբօր աղջիկն ու քո եղբայրը՝ երկու խղճալի արարածները, Որ ձեռքեր չունեն, Չեն կարող իրենց տասն անգամ խորունկ վիշտն արտայայտել։ Տեսնո՞ւմ ես, ինձ լոկ աջ ձեռքս են թողել, Որ ես նրանով կուրծքս ծուատեմ, Ու երբ իմ սիրտը՝ վշտից խելագար, Խիստ բաբախում է մարմնիս բանտի մէջ, Ես հարուածում եմ տանջահար կրծքիս, որ նա հանդարտուի։ [To Lavinia.] Դո՛ւ, վշտի՜ քարտէ՛զ, որ վիշտդ ես յայտնում լոկ նշաններով, Եթէ չես կարող սանձել քո սրտի բաբախումները խիստ նախատալից, Խոցիր քո սիրտը հառաչանքներով Կամ ատամներով վերցրու մի դանակ Եւ խորունկ մի փոս բաց սրտիդ դիմաց, Որ խեղճ աչքերիդ բոլոր արցունքներն այդ փոսը լցուեն, Եւ հեղեղելով խեղդեն ողբակոծ այդ խելագարին աղի ծովի մէջ։

Maintenant asseyons-nous, et songez à ne prendre de nourriture que ce qu'il en faut pour conserver en nous assez de forces pour venger nos affreux malheurs. Marcus, dénoue le noeud de ton douloureux embrassement; ta nièce et moi, pauvres créatures, sommes privés de nos mains, et nous ne pouvons exprimer notre profond chagrin en nous pressant de nos bras. Cette pauvre main droite qui me reste ne m'est laissée que pour tourmenter mon sein; et lorsque mon coeur, rendu fou par la souffrance, bat violemment dans cette prison de chair, je le réprime ainsi par mes coups. [To Lavinia.] Toi, carte de douleurs, qui me parles par signes, tu ne peux, quand ton coeur précipite ses battements douloureux, le frapper comme moi pour l'apaiser. Blesse-le par tes soupirs, ma fille; tue-le par des gémissements, ou saisis un petit couteau entre tes dents, et fais une ouverture là où palpite ton coeur, afin que toutes les larmes que

laissent tomber tes pauvres yeux puissent couler dans cette fente et noyer dans des flots amers ce coeur insensé qui se lamente.

## MARCUS.

Ամաչիր, եղբա՛յր, մի՛ սովորեցրու դժբախտ աղջկադ, Որ իր քնքշագին կուրծքը հարուածի կտրուած ձեռքերով։

Fi donc! mon frère, fi donc! N'enseigne point à ta fille à porter des mains homicides sur sa frêle vie!

## TITUS.

Ինչ է, դու վշտից խե՞լքդ ես թռցրել, Թող ինձնից բացի ոչ ոք աշխարհում չխելագարուի։ Ինչպէ՞ս կարող է կտրուած ձեռքերով կրծքին հարուածել, Բայց դու ինչո՞ւ ես անվերջ կրկնում «ձեռքերը» բառը։ Ինչո՞ւ ստիպել, որ Էնէասը կրկնակի պատմի, Թէ ինչպէս գիշերն այրուեց Տրոյան, եւ ինչպէս նա ինքը դժբախտացաւ, Մի՛ դիպչէք նրանց ձեռքերին դժբախտ, Թող մենք չյիշենք, թէ ձեռքեր չունենք։ Այս ի՞նչ խելագար մտքեր եմ յայտնում, Կարծես թէ Մարկոսն այդ բանը չասէր՝ Կը մոռանայինք, որ ձեռքեր չունենք։ Բայց եկէք ուտենք։ Սիրելի դուստրս, ա՛յ, սա վերցրու, Ինչ է, սեղանին ըմպելիք չկա՞յ։ Մարկոս, դու լսիր, թէ ինչ է ասում, Ես հասկանում եմ նրա տանջալից համր նշանները, Աղջիկս ասում է՝ ուրիշ ըմպելիք ինքը չի խմի, Բացի իր վշտի հորդ արցունքներից, Որոնք մրրկում են իր տառապանքով եւ աղիանում այտերի վրայ։ Լռակեա՛ց դու վիշտ, ես պէտք է կարդամ քո ողջ մտքերը, Ես պէտք է այնպէս անգիր իմանամ քո շարժումները, Ինչպէս մուրացիկ ճգնաւորները աղօթք անելիս։ Դու չես հառաչում, երկինք չես ուղղում Տանջուած մարմնիդ մնացորդները, Աչքդ չես թարթում, ծունկի չես գալիս, Նշան չես անում, Էլ չես խոնարհւում, Որ ես չկազմեմ այդ շարժումներից մի այբբենարան Ես քո մտքերը չկարողանամ մէկ առ մէկ կարդալ։

Quoi, le chagrin te fait-il déjà extravaguer, Marcus? ce n'est qu'à moi seul qu'il appartient d'être fou. Quelles mains homicides peut-elle porter sur sa vie? Ah! pourquoi prononces-tu le nom de mains? c'est presser Énée de raconter deux fois l'embrasement de Troie et l'histoire de ses cruelles infortunes. Ah! évite de toucher à un sujet qui t'amène à parler de mains, de peur de nous rappeler que nous n'en avons point. Fi donc, fi donc! quels discours extravagants! Comme si nous pouvions oublier que nous n'avons pas de mains, quand même Marcus ne prononcerait pas le mot de mains! Allons, commençons: chère fille, mange ceci. Il n'y a point à boire? Écoute, Marcus, ce qu'elle veut dire. Je puis interpréter tous ses signes douloureux. Elle dit qu'elle ne boit d'autre boisson que ses larmes brassées avec ses chagrins et fermentées sur ses joues. Muette infortunée, j'apprendrai tes pensées et je saurai aussi bien tes gestes muets que les ermites mendiants savent leurs saintes prières. Tu ne pousseras point de soupir, tu n'élèveras point les moignons vers le ciel, tu ne feras pas un clin d'oeil, un signe de tête, tu ne te mettras pas à genoux, tu ne feras pas un geste, que je n'en compose un alphabet, et que je ne parvienne, par une pratique assidue, à savoir ce que tu veux dire.

## YOUNG LUCIUS.

Իմ բարի՛ պապիկ, բա՛ւ է վշտանաս այսպէս դառնօրէն, Ուրախ հեքիաթներ պատմիր դու նրան։

Mon bon grand-père, laisse là ces plaintes amères, et égaye ma tante par quelque belle histoire.

## MARCUS.

Աւա՜ղ, իմ քնքուշ, սիրելի տղայ։ Նա լաց է լինում՝ տեսնելով իր խեղճ պապի խոր վիշտը։

Ce pauvre enfant, ému de nos douleurs, pleure de voir le chagrin de son grand-père.

TITUS.

Դու լաց մի լինի, քնքուշ պատանի, Դու ստեղծուել ես տաք արցունքներից, Եւ արցունքներն էլ շուտով կը սկսեն քո աշխարհին այրել։

Calme-toi, tendre rejeton, tu es fait de larmes, et ta vie s'écoulerait bientôt avec elles.

*[Marcus strikes his plate with a knife.]*

TITUS [cont.]

Ի՞նչ էր դանակով խփածդ, Մարկոս։

Que frappes-tu de ton couteau, Marcus?

MARCUS.

Իմ սպանածը մի ճանճ էր, տէր իմ։

Ce que j'ai tué, seigneur, une mouche.

TITUS.

Օ՜ մարդասպա՛ն, սիրտս ես սպանում։ Իմ աչքերն արդէն շատ են յագեցել դաժանութիւնից. Անմեղ էակի սպանութիւնը Տիտոսի եղբօրն անվայել է խիստ։ Գնա՜ այստեղից։ Տեսնում եմ, որ դու մերոնց նման չես։

Malédiction sur toi, meurtrier, tu assassines mon coeur: mes yeux sont rassasiés de voir la tyrannie. Un acte de mort exercé sur un être innocent ne sied point au frère de Titus. Sors de ma présence, je vois que tu n'es pas fait pour être en ma société.

MARCUS.

Աւա՜ղ, ես միայն ճանճ սպանեցի։

Seigneur, je n'ai tué qu'une mouche.

TITUS.

Իսկ եթէ այդ ճանճն հայր ու մայր ունէր, Ա՜խ, նրանք ինչպէ՜ս պիտի կախէին իրենց ոսկեփայլ քնքուշ թեւերը Եւ ինչպէ՜ս պիտի օդը լցնէին ողբի բզզիւնով։ Խե՜ղճ անվնաս ճանճ, Նա եկաւ, որ մեզ ուրախացնէր քաղցր բզզիւնով, Բայց սպանեցիր դու նրան, Մարկոս։

Eh quoi! si cette mouche avait un père et une mère? comme tu les verrais laisser pendre leurs ailes délicates et dorées et frapper l'air de leur murmure gémissant! Pauvre et innocente mouche, qui était venue ici pour nous égayer par son bourdonnement mélodieux! et tu l'as tuée!

MARCUS.

Ների՜ր ինձ, եղբա՜յր։ Դա մի զզուելի, կեղտոտ սեւ ճանճ էր, Սեւ, ինչպէս մաւրը գոռոզ կայսրուհու, Եւ դրա համար սպանեցի նրան։

Pardonnez, seigneur, c'était une mouche noire et difforme, semblable au More de l'impératrice: voilà pourquoi je l'ai tuée.

TITUS.

Ինձ ներիր, որ կշտամբեցի։ Դու բարի գործ ես կատարել, եղբա՛յր։ Տուր ինձ դանակդ, ես պիտի ծաղրեմ այդ կեղտոտ ճանճին, Որ թռաւ-եկաւ ասես մաւրի պէս ինձ դիտաւորեալ թունաւորելու։ Սա՝ քեզ, Ահարոն, սա՝ քեզ, Տամորա։ Ա՜խ, սրիկանե՛ր, Մենք այնուհանդերձ այնպէս չենք ընկել, Որ չկարողանանք մի ճանճ սպանել, Որ ածխի պէս սեւ մաւրին է նման։

Alors pardonne-moi de t'avoir blâmé, car tu as fait une action charitable. Donne-moi ton couteau; je veux outrager son cadavre, me faisant illusion comme si je voyais en lui le More qui serait venu exprès pour m'empoisonner. Voilà pour toi, et voilà pour Tamora; ah! Scélérat! Cependant je ne crois pas que nous soyons encore réduits si bas que nous ne puissions entre nous tuer une mouche qui vient nous offrir la ressemblance de ce More noir comme le charbon.

MARCUS.

Աւա՜ղ, դժբախտ մարդ։ Վիշտը այնպէս է նրան խենթացրել, Որ ստուերները նրան թւում են կենդանի մարդիկ։

Pauvre homme! la douleur a fait tant de ravages en lui, qu'il prend de vains fantômes pour des objets réels.

TITUS.

Գնանք, Լաւինիա։ Գնանք սենեակդ, այնտեղ քեզ համար ես պիտի կարդամ Անցած-գնացած ժամանակների տխուր պատմութիւններից. Դու էլ եկ, տղա՛ս, աչքերդ են ջահէլ, Կը կարդաս, երբ իմ աչքերը յոգնեն։

Allons, levons-nous. Lavinia, viens avec moi: je vais dans mon cabinet; je veux lire avec toi les tristes aventures arrivées dans les temps anciens. Viens, mon enfant, lire avec moi; ta vue est jeune, et tu liras lorsque la mienne commencera à se troubler.

*[All exit.]*

][][

ACT IV. SCENE I.

Rome. Titus' garden. Young Lucius enters running with and Lavinia chasing him. Titus and Marcus soon enter as well.

YOUNG LUCIUS.

Օգնիր ինձ, պապիկ, օգնիր, խնդրում եմ, Ինձ հորաքրոյրս հետապնդում է, չգիտեմ ինչու։ Հօրեղբայր Մարկոս, նայի՛ր՝ ինչպէս է նա արագ գալիս, Ես չեմ հասկանում, թէ ինչ է ուզում հորաքրոյրն ինձնից։

Au secours, mon grand-père, au secours! ma tante Lavinia me suit partout, je ne sais pourquoi. Mon cher oncle Marcus, voyez comme elle court vite. Hélas, chère tante, je ne sais pas ce que vous voulez.

MARCUS.

Կանգնիր իմ կողքին ու մի՛ վախենա քո հորաքրոյրից։

Reste près de moi, Lucius; n'aie pas peur de ta tante.

TITUS.
Նա սիրում է քեզ քնքշօրէն, տղաս, քեզ վնաս չի տայ։
Elle t'aime trop, mon enfant, pour te faire du mal.

YOUNG LUCIUS.
Այո, սիրում էր, երբ հայրս Հռոմում էր։
Oui, quand mon père était à Rome, elle m'aimait bien.

MARCUS.
Ա՛խ, ի՞նչ է ասում իմ եղբօր աղջիկն այս նշաններով։
Que veut dire ma nièce Lavinia par ces signes?

TITUS.
Դու մի՛ վախենա, սիրելի Լուցիոս։ Նա ինչ-որ բան է Կամենում ասել։ Տե՛ս, թէ ինչպէս է նա քեզ մօտենում, Կարծես ուզում է քեզ մի տեղ տանել։ Ա՛խ, Կորնելիան իր որդիներին երբեք չէր կարդում այնպէս եռանդով, Ինչպէս կարդում էր քեզ համար, Լուցիոս, քո հօրաքոյրը Մարկ Տուլլիանոսի ոտանաւորներն ու «Օրատորը»։
N'aie pas peur d'elle, Lucius. Elle veut dire quelque chose. Vois, Lucius, vois comme elle t'invite. Elle veut que tu ailles quelque part avec elle. Ah! mon enfant, jamais Cornélie ne mit plus de soin à lire à ses enfants, que Lavinia à te lire de belles poésies et les harangues de, "Cicéron."

MARCUS.
Դու չե՞ս կռահում, թէ ինչու նա քեզ հանգիստ չի տալիս։
Ne peux-tu deviner pourquoi elle te sollicite ainsi?

YOUNG LUCIUS.
Ոչինչ չգիտեմ, չեմ կարող նոյնիսկ մի բան գուշակել. Գուցէ մի նոպա տանջում է նրան։ Իմ պապն ասում էր, Որ ծանր վիշտը հասցնում է մարդուն խելագարութեան։ Ես կարդացել եմ, որ խելագարուեց Հեկուբէն վշտից, Դրա համար էլ ես վախենում եմ, Թէեւ լաւ գիտեմ, որ իմ սիրելի հօրաքոյրը ինձ Այնպէս էր սիրում, ինչպէս չէր սիրում իմ մայրը երբեք։ Եւ եթէ խելքը նա չի կորցրել, ինձ չէր վախեցնի, Այդ էլ ստիպեց, գրքերս գցած, նրանից փախչել, Գուցէ եւ իզուր։ Բայց դու ինձ ներիր, բարի հօրաքոյր, Եւ եթէ Մարկոս հօրեղբայրը գայ, Ես սիրայօժար ձեզ կը հետեւեմ։
Je n'en sais rien, moi, seigneur, ni ne peux le deviner, à moins que ce ne soit quelque accès de frénésie qui l'agite; car j'ai souvent ouï dire à mon grand-père que l'excès du chagrin rendait les hommes fous, et j'ai lu que Hécube de Troie devint folle de douleur: c'est ce qui m'a fait peur, quoique je sache bien que ma noble tante m'aime aussi tendrement qu'ait jamais fait ma mère, et qu'elle ne voudrait pas effrayer mon enfance, à moins que ce ne fût dans sa folie. C'est ce qui m'a fait jeter mes livres, et fuir sans raison, peut-être; mais pardon, chère tante; oui, madame, si mon oncle Marcus veut venir, je vous accompagnerai bien volontiers.

MARCUS.
Ես կը գամ, Լուցիոս։

Lucius, je le veux bien.

*[Using her stumps, Lavinia flips through the books that had fallen out of Lucius' hands.]*

TITUS.

Ի՞նչ պատահեց քեզ, սիրելի դուստրս։ Ի՞նչ է նա ուզում, Գուցէ գրքերից մէկն է կամենում։ Բա՛ց, Լուցիոս, բա՛ց գրքերը բոլոր։ Իսկ դու, Լաւինիա, շատ ես կարդացել, Գիտես քո սիրած գրքերի տեղն իմ գրադարանում, Գնա ու փնտրիր գրքերի միջից քո ուզած գիրքը, Մոռացիր վիշտդ, Մինչեւ որ Աստուած ցոյց տայ անիծեալ այդ չարագործին։ Բայց նա ինչո՞ւ է ձեռքերն անընդհատ վեր բարձրացնում։
Eh bien, Lavinia? Marcus, que veut-elle dire? il y a un livre qu'elle demande à voir. Lequel de ces livres, ma fille? Ouvre-les, mon enfant. Mais tu es plus lettrée, ma fille, et plus instruite. Viens, et choisis dans toute ma bibliothèque, et trompe ainsi tes chagrins jusqu'à ce que le ciel révèle l'exécrable auteur de ces atrocités. Pourquoi lève-t-elle ses bras ainsi l'un après l'autre?

MARCUS.

Միթէ՞ չի ասում, որ մեղաւորը մէկ սրիկայ չէ, Կտրած ձեռքերը երկինք է պարզում, Որ աստծուց խնդրի վրէժխնդրութիւն։
Je crois qu'elle veut dire qu'il y avait plus d'un scélérat ligué contre elle dans cette action. Oui, il y en avait plus d'un, ou bien, elle lève les bras vers le ciel pour implorer sa vengeance.

TITUS.

Լուցիոս, ի՞նչ գիրք է այսպէս նա թերթում։
Lucius, quel est ce livre qu'elle agite ainsi?

YOUNG LUCIUS.

Մետաֆորմոզները՛ Օւիդիոսի, պապիկ, Մայրս էր ինձ տուել։
Mon grand-père, ce sont les Métamorphoses d'Ovide: c'est ma mère qui me l'a donné.

MARCUS.

Յանուն իր սիրոյ, որն արդէն չկայ, Այս մէկն է ընտրել գրքերի միջից։
C'est peut-être par tendresse pour celle qui n'est plus qu'elle a choisi ce livre entre tous les autres.

TITUS.

Նայիր, թոռնիկս, ինչ արագութեամբ թերթերն է շրջում, Օգնիր դու նրան, ի՞նչ է փնտրում նա։ Կարդա՞մ, Լաւինիա։ Սա Փիլոմելի ողբերգութիւնն է, Ստոր Թերեւսի դաւաճանութեան, բռնաբարութեան մասին է պատմում։ Ես վախենում եմ, որ նոյն արմատն է քեզ ցաւ պատճառում։
Voyez avec quelle activité elle tourne les feuillets! aidez-la: que veut-elle trouver? Lavinia, dois-je lire? Voici la tragique histoire de Philomèle, qui raconte la trahison de Térée et son rapt; et le rapt, je le crains bien, a été la source de tes malheurs.

MARCUS.
Նայի՛ր, եղբա՛յրս, ինչպէս է թերթում գրքի էջերը։
Voyez, mon frère, voyez: remarquez avec quelle attention elle considère les pages!

TITUS.
Միթէ՞ Լաւինիա, մութ ու չարագոյժ խոր անտառի մէջ Բռնաբարել են, անարգել են քեզ Փիլոմելի պէս։ Նայի՛ր, օ՛, նայի՛ր։ Այո՛, այսպիսի մի տեղ կայ այնտեղ, Ուր մենք միասին որս էինք անում, Երանի՛ այնտեղ մենք երբեւիցէ որս չանէինք։ Ճիշտ այս անկիւնն է նկարագրել պօէտն անուանի, Որը ստեղծել է մայր բնութիւնը բռնաբարութեան, սպանութեան համար։
Lavinia, chère fille, aurais-tu été ainsi surprise, violée et outragée, comme l'a été Philomèle, saisie de force dans le vaste silence des bois sombres et insensibles? Voyez, voyez! Oui, voilà la description d'un lieu pareil à celui où nous chassions. Ah! plût au ciel que nous n'eussions jamais, jamais chassé là! Il est exactement semblable à celui que le poëte décrit, et la nature semble l'avoir formé pour le meurtre et le rapt.

MARCUS.
Օ՛ բնութիւնը երբեք չէր շինի այսպիսի մթին, գարշելի որջեր, Թէ զուարճութիւն չպատճառէին այդ սարսափները մեր աստուածներին։
O! pourquoi la nature aurait-elle bâti un antre si horrible, à moins que les dieux ne se plaisent aux tragédies?

TITUS.
Տուր մեզ նշաններ, սիրելի դուստրս, Այստեղ բոլորս էլ բարեկամներ ենք, Ո՞ր հռոմէացի պատրիկն յանդգնեց այդ գործը անել, Գուցէ սենեակդ գողունի մտաւ Սատուրնինո՞սը, Ինչպէս Տարկուինոսը, որ իր ռազմական ճամբարը լքեց, Որպէսզի յետոյ սուրբ Լուկրեցիայի մահիճը պղծէր։
Donne-moi quelques signes, chère fille. Il n'y a ici que tes amis. Quel est le seigneur romain qui a osé commettre cet attentat? Ou Saturninus se serait-il écarté, comme fit jadis Tarquin, qui quitta son camp pour aller souiller le lit de Lucrèce?

MARCUS.
Նստիր իմ կողքին, եղբօրս աղջիկ, նստիր դու, եղբայր։ Ներշնչէք դուք ինձ Ապոլլոն, Պալլաս, Մերկուրի ու Զեւս, Որպէսզի գտնեմ այս չարագործին։ Օ՛ եղբա՛յր, նայի՛ր, նայի՛ր, Լաւինիա, գետինը հարթ է, Եթէ կարող ես, ինձ նման շարժիր այս բարակ ցուպը, Նայիր, անունս աւազի վրայ ինչպէս եմ գրում առանց ձեռքերի։
Assieds-toi, ma chère nièce. Mon frère, asseyez-vous près de moi. Apollon, Pallas, Jupiter ou Mercure, inspirez-moi, afin que je puisse découvrir cette trahison. Seigneur, regardez ici. Regarde ici, Lavinia.

*[Marcus writes his name with his staff, and guides it with feet and mouth.]*

MARCUS [cont.]
Թող անիծուի նա, ով մեզ ստիպեց դիմել այս խաղին։ Իմ եղբօր աղջիկ, գրիր աւազին, վերջապէս, ցոյց տուր, Ինչ աստուածներն են կամենում տեսնել վրէժի համար, Եւ թող երկինքը քո ցուպը շարժի, Որ դու դրոշմես աւազի վրայ դժբախտութիւնդ, Եւ մենք կ'իմանանք ճշմարտութիւնը ու չարագործին։
Ce sable est uni; tâche de conduire comme moi le bâton, si tu le peux, après que j'aurai écrit mon nom sans le secours

des mains. Maudit soit l'infâme qui nous réduit à ces expédients! Écris, ma chère nièce, et dévoile enfin ici ce crime que les dieux veulent qu'on découvre pour en tirer vengeance: que le ciel guide ce burin pour imprimer nettement tes douleurs, afin que nous puissions connaître les traîtres de la vérité!

*[Lavinia takes the staff in her mouth and, guiding it with her stumps, begins to write.]*

## TITUS.

Կարդո՞ւմ ես, եղբայր, ի՞նչ է նա գրում. «*Բռնաբարում, Քիրոն, Դեմետրիոս*»:
Lisez-vous, mon frère, ce qu'elle a écrit? Rapt, *"Chiron ... Démétrius."*

## MARCUS.

Ի՞նչ։ Ի՞նչ։ Տամօրայի անառակ որդիք Կատարողներն են այս սարսափելի, արիւնոտ գործի՞։
Quoi! quoi! ce sont les enfants dissolus de Tamora qui sont les auteurs de cet abominable et sanglant forfait!

## TITUS.

Երկնային մեծ տիրակալ, ի՞նչ համբերութեամբ ես դիտում չարագործութիւնները։ Ի՞նչ հանդուրժողաբար ես նայում նրանց։
Magne dominator poli, tam lentus audis scelera? Tam lentus vides.

## MARCUS.

Խաղաղուի՛ր, եղբա՛յր։ Այն, ինչ գրուած է աւազի վրայ, Բաւ է մի վայրկեան, որ ալեկոծի խաղաղ մտքերը Ու մանկան սիրտը զայրոյթով զինի։ Իմ բարի եղբայր, ծունր իջիր ինձ հետ, Եւ դու, Լաւինիա, ծունր իջիր, դու էլ, քնքուշ պատանի, Դու՝ հռոմէացի Հեկտորի յոյսը, Օ՜ երդուէ՛ք ինձ հետ, ինչպէս որ երդուեց ջահէլ Բրուտոսը Լուկրեցիայի հօր ու ամուսնու հետ, Երբ տեսաւ տան մէջ իր պարկեշտ կնոջ պատիւն անարգուած։ Երդուէ՛ք, որ մահու վրէժ մենք կ'առնենք այս նենգ գոթերից. Որ մենք կը տեսնենք արիւնը նրանց Կամ թէ կը մեռնենք վիրաւորանքից։
Calme-toi, cher Titus; quoique je convienne qu'il y en a assez d'écrit sur ce sable pour révolter les âmes les plus douces, pour armer de fureur le coeur des enfants. Seigneur, agenouillez-vous avec moi: Lavinia, agenouille-toi; et toi, jeune enfant, l'espérance de l'Hector romain, agenouille-toi aussi et jurez tous avec moi; comme autrefois Junius Brutus jura, pour le viol de Lucrèce, avec l'époux désolé et le père de cette dame vertueuse et déshonorée, jurez que nous poursuivrons avec prudence une vengeance mortelle sur ces traîtres Goths, et que nous verrons couler leur sang, ou que nous mourrons de cet affront.

## TITUS.

Այո՛, բայց ինչպէ՞ս կարող ենք հասնել մեր նպատակին։ Եթէ դու որսաս այս քոթոթներին, քեզ փորձանք կը գայ։ Կ'արթնանայ նրանց մայրը վրիժառու։ Եւ եթէ յանկարծ Գործի հոտն առնի, նա, առիւծի հետ սերտ դաշինք կնքած, Կը մեղմի նրան՝ շոյելով մէջքը, Ու երբ նա քնի, ամէն ինչ կ'անի մայրը բարկացկոտ։ Սիրելի եղբայր, որսորդ ես անփորձ։ Թող ինձ այս գործը։ Գնանք, ես պէտք է գտնեմ պղնձեայ մի բարակ թիթեղ Ու փորագրեմ դաշոյնիս ծայրով թիթեղի վրայ նրա բառերը, Որպէսզի նրանք երբեք չջնջուեն։ Հիւսիսի քամին ցիրուցան կ'անի այս աւազները, Ինչպէս Սիբիլի թերթերը մգլած, Եւ այն ժամանակ ի՞նչ պէտք է մնայ քո դասից, եղբա՛յր։ Ի՞նչ կ'ասես, Լուցիոս։

C'est assez sûr, si nous savions comment. Si vous blessez ces jeunes ours, prenez garde: leur mère se réveillera; et si elle vous flaire une fois, songez qu'elle est étroitement liguée avec le lion, qu'elle le berce et l'endort sur son sein, et que pendant son sommeil elle peut faire tout ce qu'elle veut. Vous êtes un jeune chasseur, Marcus: laissons dormir cette idée, et venez; je vais me procurer une feuille d'airain, et avec un stylet d'acier j'y écrirai ces mots pour les mettre en réserve: Les vents irrités du Nord vont éparpiller ces sables dans l'air, comme les feuilles de la sibylle; et que devient alors votre leçon? Enfant, qu'en dis-tu?

YOUNG LUCIUS.
Ես կ'ասեմ, պապիկ, եթէ լինէի հասուն տղամարդ, Նոյնիսկ նրանց մօր ննջասենեակը չէր կարող թաքցնել Հռոմէական լծի վատ գերիներին։
Je dis, seigneur, que si j'étais homme, la chambre où couche leur mère ne serait pas un asile sûr pour ces scélérats, esclaves du joug romain.

MARCUS.
Այո՛, Լուցիոս, քո հայրն էլ այսպէս անձնուիրաբար Յաճախ էր գործում իր երախտամոռ երկրի համար։
Oui, voilà mon enfant! Ton père en a souvent agi ainsi pour cette ingrate patrie.

YOUNG LUCIUS.
Ես էլ հօրս պէս սուրս կը պարզեմ, եթէ ողջ մնամ։
Et moi, mon oncle, j'en ferai autant, si je vis.

TITUS.
Եկ, գնանք ինձ հետ իմ զինանոցը, Քեզ պիտի զինեմ, եւ ապա, Լուցիոս, Դու պիտի տանես իմ ընծաները կայսրուհու որդոց։ Դեհ, գնանք, գնանք։ Դու կը կատարե՞ս յանձնարարութիւնս։
Viens, viens avec moi dans mon arsenal. Lucius, je veux t'équiper; et ensuite, mon enfant, tu porteras de ma part aux fils de l'impératrice les présents que j'ai l'intention de leur envoyer à tous deux. Viens, viens: tu feras ce message; n'est-ce pas?

YOUNG LUCIUS.
Այո՛, ես նրանց կուրծքը կը պատռեմ իմ այս դաշոյնով։
Oui, avec mon poignard dans leur sein, grand-père.

TITUS.
Ո՛չ, ո՛չ, թոռնիկս, պէտք չէ այդ ձեւով։ Քեզ կ'ասեմ՝ ինչպէս։ Գնանք, Լաւինիա։ Մարկոս, տունն հսկիր, Ես ու Լուցիոսը գնում ենք պալատ, Մեզ յարգալից են սպասում այնտեղ։
Non, non, mon enfant; non pas cela: je t'enseignerai un autre moyen. Viens, Lavinia. Marcus, veille sur la maison: Lucius et moi, nous allons faire les braves à la cour: oui, seigneur, nous le ferons comme je le dis, et on nous rendra honneur.

*[Titus, Lavinia and Young Lucius exit.]*

MARCUS.
Դուք, երկինքներ, կարո՞ղ էք լսել բարեմիտ մարդու հառաչանքները եւ չշարժէլ ձեր գթասրտութիւնն այդ մարդու հանդէպ: Մարկոս, դու հսկիր այս խելագարին, Ա՛խ, նրա սրտում վշտի սպիներ աւելի շատ կան, Քան իր թշնամու վահանի վրայ, Բայց նա դեռ այնքան արդարամիտ է, որ չի կամենում իր վրէժն առնել, Օ՜ դուք, երկինքներ, Անդրոնիկոսի վրէժը լուծէք:
Ciel, peux-tu entendre les gémissements d'un homme de bien, et ne pas t'attendrir, et ne pas prendre pitié de ses maux? Marcus, suis dans sa fureur cet infortuné qui porte dans son coeur plus de blessures faites par la douleur que les coups de l'ennemi n'ont laissé de traces sur son bouclier usé; et cependant il est si juste qu'il ne veut pas se venger. Ciel! charge-toi donc de venger le vieil Andronicus.

*[Exits.]*

][][

ACT IV. SCENE II.
Rome. The palace. Aaron, Demetrius and Chiron enter through one door. Young Lucius enters through another with a bundle of weapons, and verses in his arms.]

CHIRON.
Դեմետրիոս, նայիր, մեզ մօտ է եկել Լուցիոսի տղան, Բերել է ինչ-որ յանձնարարութիւն:
Démétrius, voilà le fils de Lucius: il est chargé de quelque message pour nous.

AARON.
Խելագար պապից՝ ինչ-որ խելագար յանձնարարութիւն:
Oui, de quelque message extravagant de la part de son extravagant grand-père.

YOUNG LUCIUS.
Արքայորդիներ, ես խոնարհաբար Ողջոյն եմ բերել Անդրոնիկոսից: [To self.] Իսկ հռոմէական մեր աստուածներից խնդրում եմ ձեզ մահ:
Seigneurs, avec toute l'humilité possible, je salue Vos Grandeurs de la part d'Andronicus. [To self.] Et je prie tous les dieux de Rome qu'ils vous confondent tous deux.

DEMETRIUS.
Շնորհակալութի՛ւն, սիրելի՛ Լուցիոս, ի՞նչ լուր ես բերել:
Grand merci, aimable Lucius; qu'y a-t-il de nouveau?

YOUNG LUCIUS.
[Aside.] Որ դուք երկուսով սրիկաներ էք՝ Բռնաբարութեան խարան դրոշմուած դէմքերիդ վրայ: [Aloud.] Թէ հաճոյ է ձեզ, իմ պապը ինձ հետ ուղարկել է ձեզ Իր զինանոցի լաւագոյն զէնքը, որ ձեր մեծաշուք Ջահէլութեանը՝ Հռոմի յոյսին, հաճոյք պատճառի: Ինձ կարգադրեց այսպէս էլ ասել, եւ ես ասում եմ, Որ նուէրները հարկ եղած դէպքում դուք լաւ գործածէք: Եւ այսպէս ես ձեզ թողնում եմ այստեղ, [Aside.]

Արնո՛տ սրիկանե՛ր։
[Aside.] Que vous êtes tous les deux découverts pour des scélérats souillés d'un rapt; voilà ce qu'il y a de nouveau. [Aloud.] Sous votre bon plaisir, mon grand-père, bien conseillé, vous envoie par moi les plus belles armes de son arsenal, pour en gratifier votre illustre jeunesse, qui fait l'espoir de Rome; car c'est ainsi qu'il m'a ordonné de vous appeler; je m'en acquitte, et je présente à Vos Grandeurs ces dons, afin que dans l'occasion vous soyez bien armés et bien équipés; et je prends congé de vous, [Aside.] Comme de sanguinaires scélérats que vous êtes.

*[Young Lucius exits.]*

## DEMETRIUS.

Այս ի՞նչ կապոց է, վրան էլ ինչ-որ բառեր են դրուած, եկ կարդանք, Քիրոն։ Կարդում են։ *«Նա, ով ապրում է ազնուօրէն, եւ խորթ է նրան օրինազանցութիւնը, կարիք չունի ո՛չ մաւրիտանական նիզակի, ո՛չ էլ աղեղի։»*
Que vois-je ici? Un rouleau écrit tout autour? Voyons: *"Integer vitæ scelerisque purus, non eget Mauri jaculis, non arcu."*

## CHIRON.

Օ՜ Յօրացիոսի քերթուածներից են, ինձ քաջ ծանօթ են, ես կարդացել եմ տարիներ առաջ քերականութեան մէջ։
O! C'est un passage d'Horace; je le connais bien; je l'ai lu il y a bien longtemps dans la grammaire.

## AARON.

Այո, դուք ճիշտ էք, Յօրացիոսից են։ [Aside.] Ինչ է նշանակում աւանակ լինել։ Ինձ դուր չեն գալիս այս կատակները, Ծերուկը նրանց դիմակն է պատռել, Զէնք է ուղարկել՝ բանաստեղծութեան տողերը վրան, Որպէսզի նրանց խիստ վիրաւորի, Թէեւ չեն զգում նրանք հասցրած վիրաւորանքը։ Թէ ոտքի լինէր այժմ կայսրուհին մեր խորաթափանց, Կը գնահատէր բարի ծերունու սրամտութիւնը, Բայց թող կայսրուհին անհանգիստ մահճում քիչ հանգստանայ։ [Aloud.] Արքայորդիներ, միթէ՞ չբերեց բախտաւոր աստղը Մեզ այստեղ, Հռոմ, մեզ՝ գինուորներիս օտարերկրացի, Յաջողութիւն չէ՞ր, որ կայսրական դարպասների մօտ, Իր եղբօր առաջ վիրաւորեցի տրիբուն Մարկոսին։
Oui, fort bien. C'est un passage d'Horace: justement, vous y êtes. [Aside.] Ce que c'est que d'être un âne! Ceci n'est pas une bonne plaisanterie, le vieillard a découvert leur crime, et il leur envoie ces armes enveloppées de ces vers, qui les blessent au vif, sans qu'ils le sentent. Si notre spirituelle impératrice était levée, elle applaudirait à l'idée ingénieuse d'Andronicus: mais laissons-la reposer quelque temps sur son lit de souffrance. [Aloud.] Eh bien, mes jeunes seigneurs, n'est-ce pas une heureuse étoile qui nous a conduits à Rome, étrangers et qui plus est captifs, pour être élevés à cette fortune suprême? Cela m'a fait du bien de braver le tribun devant la porte du palais, en présence de son père!

## DEMETRIUS.

Բայց աւելի մեծ յաջողութիւն չէ՞ Տեսնել, թէ ինչպէս այդ մեծ պատրիկը Չարամտօրէն ուղարկել է մեզ այսպիսի նուէր։
Et moi cela me fait encore plus de bien de voir un homme si illustre s'insinuer bassement dans notre faveur, et nous envoyer des présents.

AARON.

Միթէ՞, Դեմետրիոս, նա պատճառ չունէր այդ բանի համար. Չէ՞ որ դուք նրա քնքուշ աղջկան Օգտագործեցիք բարեկամաբա՛ր։

N'a-t-il pas raison, seigneur Démétrius? N'avez-vous pas traité sa fille en ami?

DEMETRIUS.

Ես կ'ուզենայի, որ հռոմէացի ճիշտ հազար կանայք Նոյնպէս մեր կրքերն յագեցնէին։

Je voudrais que nous eussions un millier de dames romaines à notre merci, pour assouvir tour à tour nos désirs de volupté.

CHIRON.

Այդ ցանկութեան մէջ՝ սէր ու գթութիւն։

Voilà un souhait charitable et plein d'amour!

AARON.

Բացակայում է ձեր մայրը թէ ոչ՝ նա կ'ասէր՝ ամէն։

Il ne manque ici que votre mère pour dire: Amen!

CHIRON.

Քսան հազար էլ նրանք լինէին՝ նա նոյնը կ'ասէր։

Et elle le dirait, y eût-il vingt mille Romaines de plus dans le même cas.

DEMETRIUS.

Գնանք, աղօթենք մեր աստուածներին Մեր մօր երկունքի ցաւերի համար։

Allons, venez: allons prier les dieux pour notre mère bien-aimée qui est à présent dans les souffrances.

AARON.

Աւելի լաւ է՝ գնանք աղօթենք սատանաներին, Քանզի լքել են մեզ աստուածները։

Priez plutôt tous les démons; les dieux nous ont abandonnés.

*[Off-stage trumpets sound.]*

DEMETRIUS.

Ինչո՞ւ են կայսրի փողերը հնչում այսպէս ցնծագին։

Pourquoi les trompettes de l'empereur sonnent-elles ainsi?

CHIRON.

Ուրախանում է որդու ծնունդով։

Apparemment pour la joie qu'il ressent d'avoir un fils.

DEMETRIUS.
Սը՛ս, ո՞վ է գալիս։
Doucement; qui vient à nous?

*[The Nurse enters, carrying Aaron's baby son.]*

NURSE.
Բարի առաւօտ ձեզ, արքայազններ, Օ՛ դուք չէ՞ք տեսել մաւր Ահարոնին։
Salut, seigneurs! Oh! dites-moi, avez-vous le boom-boom Aaron?

AARON.
Այո՛, տեսել եմ աւել կամ պակաս կամ` ամենեւին։ Ահարոնն ես եմ, ի՞նչ ես կամենում նրանից, վհո՛ւկ։
Bien, un peu plus, ou un peu moins, ou pas du tout, voici Aaron: que voulez-vous à Aaron?

NURSE.
Ազնիւ Ահարոն, մենք կործանուեցինք, Օգնիր քեզ, թէ ոչ` կորած ես յաւէտ։
Mon cher Aaron, nous sommes tous perdus; venez à notre secours, ou le malheur vous accable à jamais!

AARON.
Ի՞նչ ես մլաւում որձ կատուի նման, Ի՞նչ ես շալի մեջ փաթաթել այսպէս։
Quoi? quel miaulement vous faites! Que tenez-vous là enveloppé dans vos bras?

NURSE.
Այն, ինչ կ'ուզէի ընդմիշտ թաքցնել երկնքի աչքից։ Ա՛խ, մեր կայսրուհու խայտառակութիւնը եւ ամօթանքը մեծաշուք Հռոմի։ Օ՛ արքայազններ, նա ազատուել է։
Oh! ce que je voudrais cacher à l'oeil des cieux; l'opprobre de notre impératrice, et la honte de la superbe Rome. Elle est délivrée, seigneurs, elle est délivrée.

AARON.
Ի՞նչ, որտե՞ղ։
A qui?

NURSE.
Տէր իմ, երեխայ, անկողնում։ Էլ ո՞ւր։
Je veux dire qu'elle est accouchée.

AARON.
Թող Աստուած նրան հանգստութիւն տայ, իսկ ի՞նչ է ծնել։
Eh bien, que Dieu lui donne bon repos! Que lui a-t-il envoyé?

NURSE.
Մի սեւ սատանայ։
Un démon.

AARON.
Սատանայի մա՞յր։ Բախտաւոր ծնունդ։
Eh bien! alors elle est la femelle de Pluton? une heureuse lignée!

NURSE.
Ոչ թէ բախտաւոր, այլ սարսափելի, դժբախտ, սեւ ծնունդ։ Ահա երեխան, ասես թէ լինի գարշելի դօդօշ Մեր երկրի սիրուն, սպիտակամորթ տղաների մէջ, Կայսրուհին քեզ է ուղարկել նրան, քթիցդ է թռել, Քո իսկ պատկերն է, եւ խնդրում է նա, Որ քո դաշոյնով մկրտես նրան։
Dites une malheureuse, hideuse, noire et triste lignée. Le voilà l'enfant, aussi dégoûtant qu'un crapaud, au milieu des beaux nourrissons de notre climat. L'impératrice vous l'envoie, c'est votre image, scellée de votre sceau, et vous ordonne de le baptiser avec la pointe de votre poignard.

AARON.
Մեղա՛յ քեզ, պոռնի՛կ, միթէ՞ սեւն այդքան զզուելի գոյն է։ Օ՛ կարմրաթշիկ, դու սիրուն ծաղիկ։
Fi donc! fi donc! prostituée! Le noir est-il une si vilaine couleur? Cher joufflu, tu fais une jolie fleur, cela est sûr.

DEMETRIUS.
Ստոր սրիկա՛յ, այս ի՞նչ ես արել։
Misérable, qu'as-tu fait?

AARON.
Այն, ինչ որ ինքդ չես կարող անել։
Ce que tu ne peux défaire.

CHIRON.
Խափշիկ, մեր մօրը կործանել ես դու։
Tu as perdu notre mère.

AARON.
Սրիկայ, նրան ես կրկնապատի՛կ մայր եմ դարձրել։
Misérable, j'ai trouvé ta mère.

DEMETRIUS.
Նրան կործանել ես, դժոխքի սեւ շուն։ Օ՛ թող անիծուի նրա զզուելի այս ընտրութիւնը, Նզովէ՛ք ծնունդն այդ սատանայի։
Oui, chien d'enfer, et c'est ainsi que tu l'as perdue. Malheur à son fruit, et maudit soit son détestable choix! Maudit soit le rejeton d'un si horrible démon.

CHIRON.
Նա չպէ՛տք է ապրի։
Il ne vivra pas.

AARON.
Նա չպէ՛տք է մեռնի։
Il ne mourra pas.

NURSE.
Նա պէտք է մեռնի, նրա մայրն ինքն է այսպէս կամենում։
Aaron, il le faut; sa mère le veut ainsi.

AARON.
Իսկ ինչպէ՞ս պէտք է նա մեռնի, ծծմա՛յր։ Թող իմ արիւնի Ու պտղի վրայ ոչ ոք չփորձի ձեռք բարձրացնել, ինձանից բացի։
Le faut-il absolument, nourrice? En ce cas, qu'aucun autre que moi n'attente à la vie de ma chair et de mon sang.

DEMETRIUS.
Ես կը շամփուրեմ իմ սրի ծայրով այս սեւ դօդօշին, Տուր այդ լակոտին, իմ սուրը նրան կը սպանի արագ։
J'embrocherai le petit têtard sur la pointe de ma rapière. Nourrice, donne-le-moi, mon épée l'aura bientôt expédiée.

AARON.
Իմ սուրն աւելի արագ կը թափի քո փորոտիքը։

*[Aaron takes his son from the Nurse and draws his sword.]*

AARON [cont.]
Կորէ՛ք, արիւնռուշտ մարդասպաններ, Ուզում էք դուք ձեր եղբօրն սպանե՞լ։ Բայց ես երդւում եմ երկնքի փայլուն լուսատուներով, Որ շողում էին այնպէս գեղեցիկ, Երբ նա յղանում էր այս սեւ երեխան, Որ նա կը մեռնի իմ լայնաբերան սրի հարուածից, Ով կը յանդգնի ձեռք տալ առաջնեկ որդուս, ժառանգիս։ Ես ձեզ ասում եմ, կաթնաշուրթ ձագե՛ր, Ո՛չ Հերկուլեսը, ո՛չ սպառնալից Տիփոնի հորդան, Եւ ո՛չ էլ Մարսը չեն կարող խլել նրան հօր ձեռքից։ Ձեզ, արիւնարբու անգութ տղաներ, ներկել են, ինչպէս պատերն սպիտակ, եւ նախշել, ինչպէս գարեջրատան ցուցափեղկերը, Ածխասեւ գոյնը այդ գոյների մէջ ամէնից լաւն է, Արհամարհում է գոյները բոլոր։ Ծովի ջրերը չեն կարող երբեք սպիտակեցնել Կարապի յաւէտ սեւ թաթիկները, Թէեւ շարունակ ծովն է մոր նման լուանում նրանց։ Իմ կողմից ասէք ազնիւ կայսրուհուն, որ երեխայ չեմ, Ես տէր եմ կանգնում սեփական որդուս, Ինչպէս կարող է, թող արդարանայ բարի տիրուհիս։
Ce fer t'aurait plus vite encore labouré les entrailles. Arrêtez, lâches meurtriers! Voulez-vous tuer votre frère? Par les flambeaux du firmament, qui brillaient avec tant d'éclat lorsque cet enfant fut engendré, il meurt de la pointe affilée de mon cimeterre, celui qui ose toucher à cet enfant, mon premier-né et mon héritier! Je vous dis, jeunes gens, qu'Encelade lui-même avec toute la race menaçante des enfants de Typhon, ni le grand Alcide, ni le dieu de la guerre, n'auraient le

pouvoir d'arracher cet enfant des mains de son père. Quoi! quoi! enfants aux joues rouges, aux coeurs vides, murs plâtrés, enseignes peintes de cabaret! le noir vaut mieux que toute autre couleur, il dédaigne de recevoir aucune autre couleur; toute l'eau de l'Océan ne blanchit jamais les jambes noires du cygne, quoiqu'il les lave à toute heure dans les flots. Dites de ma part à l'impératrice que je suis d'âge à garder ce qui est à moi, qu'elle arrange cela comme elle pourra.

DEMETRIUS.
Ուզում ես այդպէս քո ազնուատոհմ տիրուհուն ծախե՞լ։
Veux-tu donc trahir ainsi ton auguste maîtresse?

AARON.
Օ՛ իմ տիրուհին իմ տիրուհին է, իսկ սա ես ինքս եմ, Իմ ջահէլութեան ուժն ու պատկերն է, Իմ երեխային ես շատ եմ սիրում ամբողջ աշխարհից Եւ ի հեճուկս ամբողջ աշխարհի՝ կը փրկեմ նրան Կամ ձեզնից մէկը պատասխան կը տայ այստեղ՝ Հռոմում։
Ma maîtresse est ma maîtresse; et cet enfant, c'est moi-même; la vigueur et le portrait de ma jeunesse; je le préfère au monde entier; et en dépit du monde entier, je conserverai ses jours; ou Rome verra quelques-uns de vous en porter la peine.

DEMETRIUS.
Սրա պատճառով կը խայտառակուի մեր մայրը յաւէտ։
Cet enfant déshonore à jamais notre mère.

CHIRON.
Եւ կ'արհամարհի Հռոմը նրան այս եւ զզուելի վիժուածքի համար։
Rome la méprisera pour cette indigne faiblesse.

NURSE.
Զայրոյթի պահին կայսրը կը վճռի պատժել տիրուհուն։
L'empereur, dans sa rage, la condamnera à la mort.

CHIRON.
Ես կարմրում եմ խայտառակութիւնից։
Je rougis quand je songe à cette ignominie.

AARON.
Այո՛, եւ սա էլ ձեր գեղեցկութեան գերադասելի գոյներից մէկն է։ Օ՛ դաւաճան գոյն, մատնում ես սրտի գաղտնի գործերը։ Բայց այս երեխան ուրիշ գոյն ունի, Նայէ՛ք, ինչպէ՛ս է այս սեւուկ գերին ժպտում իր հօրը, Կարծես ասում է՝ *«Ես քոնն եմ, ծերո՛ւկ»։* Նա ձեր եղբայրն է, արքայորդիներ, եւ նա սնուել է հէնց այն արիւնով, Որ ձեզ կեանք տուեց, ու նոյն արգանդից, ուր բանտուած էիք, Նա ե՛ւ ազատուեց, ե՛ւ աշխարհ եկաւ։ Նա ձեր եղբայրն է, ձեր մօր արիւնը, ձեր շառաւիղը, Թէեւ կրում է դրոշմն իմ դէմքի։
Voilà donc le privilége de votre beauté; malheur à cette couleur traîtresse, qui trahit par la rougeur les secrètes pensées du coeur! Voilà un petit garçon formé d'une autre nuance. Voyez comme le petit moricaud sourit à son père, et semble

lui dire: «*Mon vieux, je suis à toi.*» Il est votre frère, seigneurs; visiblement nourri du même sang qui vous a donné la vie, et il est venu au jour et sorti du même sein, où, comme lui, vous avez été emprisonnés. Oui, il est votre frère, et du côté le plus certain, quoique mon sceau soit empreint sur son visage.

NURSE.
Ի՞նչ ասեմ, տէր իմ, բարի կայսրուհուն։
Aaron, que dirai-je à l'impératrice?

DEMETRIUS.
Աիարոն, ասա՛, ի՞նչ ենք անելու։ Մենք կը հետեւենք քո խորհուրդներին, Փրկիր քո որդուն, որ կարողանանք մենք էլ փրկուել։
Réfléchis, Aaron, sur le parti qu'il faut prendre, et nous souscrirons tous à ton avis. Sauve l'enfant, pourvu que nous soyons tous en sûreté.

AARON.
Դեհ, եկէք նստենք, լսէք խորհուրդն իմ, Ես ու իմ տղան կը նստենք այստեղ՝ ձեր քամու դիմաց, Իսկ դուք՝ա՛յ, այստեղ։ Այժմ կարող ենք հանգիստ խօսել փրկութեան մասին։
Asseyons-nous et délibérons tous ensemble; mon fils et moi nous nous placerons au vent de vous; restez là; maintenant parlez à loisir de votre sûreté.

*[They sit.]*

DEMETRIUS.
Իսկ քանի՞ կին է տեսել տղային։
Combien de femmes ont déjà vu cet enfant?

AARON.
Օ՜ արքայազններ, երբ նոյն ճամփով է մեր ջուրը գնում, Ես Աստծոյ գառ եմ։ Բայց երբ փորձում էք մաւրին վրդովել, Ո՛չ վայրի խոզը, ո՛չ էգ առիւծը, ո՛չ ծովն ալեկոծ Չեն կարող իրենց վայրի զայրոյթով ինձ հետ բաղդատուել։ Բայց ասա, պառաւ, թէ քանի՞ մարդ է տեսել տղայիս։
Allons, fort bien, braves seigneurs. Quand nous sommes tous unis, je suis un agneau. Mais si vous irritez le More, le sanglier en fureur, la lionne des montagnes, l'Océan en courroux ne seraient pas aussi redoutables qu'Aaron. Mais répondez, combien de personnes ont vu l'enfant?

NURSE.
Տէր իմ, ես ինքս, տատմայր Կորնելիան, Եւ ուրիշ ոչ ոք, բացի կայսրուհուց, որ ծնեց նրան։
Cornélie la sage-femme, et moi; personne autre si ce n'est l'impératrice sa mère.

AARON.
Տատմայր Կորնելիան, դու եւ կայսրուհին։ Երկու մարդ գաղտնիք կարող են պահել, երբ երրորդ անձը բացակայում է։ Գնա եւ կրկնիր ասածս կայսրուհուն։

L'impératrice, la sage-femme et vous. Deux peuvent garder le secret, quand le troisième n'est plus là, va trouver l'impératrice, dis-lui ce que je viens de dire.

*[Aaron kills the Nurse.]*

AARON [cont.]
Խը՜ռ, խը՜ռ, այսպէս է շամփուրի վրայ խոզը խռխռում։
Aïe! aïe! voilà comme crie un cochon de lait qu'on arrange pour la broche.

DEMETRIUS.
Ի՞նչ ասել կ'ուզես, ինչո՞ւ սպանեցիր նրան, Աhարոն։
Que prétends-tu donc, Aaron? pourquoi as-tu fait cela?

AARON.
Արքայորդիներ, սա զգոյշ քայլ է։ Եթէ ողջ մնար, նա մեզ կը մատնէր իր երկար լեզուով։ Այժմ իմացէք՝ ինչ եմ որոշել. Մեզնից քիչ հեռու իմ հայրենակից Մուլին է ապրում, Նրա կինն երէկ գիշեր ազատուեց, Ճիշտ մօրն է նման, ձեզ պէս սպիտակ։ Դուք պէտք է լեզու գտնէք նրա հետ եւ պատմէք նրանց մեր գործի մասին՝ Մանրամասնօրէն բացատրելով, թէ ինչպէս իրենց միակ երեխան վեր կը բարձրանայ Ու կը համարուի ժառանգը կայսրի, Երբ կը փոխանակուի իմ սեւուկ տղան նրանց տղայով. Որպէսզի ահեղ այս փոթորիկը սանձուի պալատում, Եւ թող մեր կայսրը օրօրի նրան իր որդու նման։ Արքայորդիներ, ես այսպէս գտայ բուժումը նրա։
Seigneur, c'est un acte de politique; la laisserai-je vivre pour trahir notre crime? Une commère bavarde avec la langue longue? Non, seigneur, non. Et maintenant connaissez tous mes desseins. Près d'ici habite un certain Mulitéus, mon compatriote; sa femme n'est accouché que d'hier. Son enfant lui ressemble, il est blanc comme vous; allez arranger le marché avec lui, donnez de l'or à la mère, et instruisez-les tous deux de tous les détails de l'affaire; dites-leur comment leur fils, par cet arrangement, sera élevé et reçu pour héritier de l'empereur, et substitué à la place du mien, afin d'apaiser cet orage qui se forme à la cour, et que l'empereur le caresse comme sien. Vous entendez, seigneurs?

*[Pointing to the corpse.]*

AARON [cont.]
Դուք պէտք է հոգաք նրա թաղումը, Դաշտը մօտիկ է, իսկ դուք յաղթանդամ, քաջ տղաներ էք, Գործն աւարտելով՝ ինձ մօտ ուղարկէք տատմօրը իսկոյն, Երբ նրանք՝ տատմայրն ու ծծմայրն արդէն խաղից դուրս լինեն, Այնժամ թող բոլոր կանայք բամբասեն, ինչքան կամենան։
Et voyez je lui ai donné sa potion. Il faut que vous preniez soin de ses funérailles. Les champs ne sont pas loin, et vous êtes de braves compagnons. Cela fait, songez à ne pas prolonger les délais, mais envoyez-moi sur-le-champ la sage-femme. Une fois débarrassés de la sage-femme et de la nourrice, libre alors aux dames de jaser à leur gré.

CHIRON.
Ինչպէս տեսնում եմ, դու չես վստահում գաղտնիքը քամուն։
Aaron, je vois que tu ne veux pas confier aux vents tes secrets.

DEMETRIUS.
Մեր մօր նկատմամբ ուշադիր ես խիստ, Եւ մենք բոլորս քեզ ենք պարտական։
Pour le soin que tu prends de l'honneur de Tamora, elle et les siens te doivent une grande reconnaissance.

*[Demetrius and Chiron exit, dragging the dead Nurse with them.]*

AARON.
Արդ, ծիծեռնակից արագ կը թռչեմ դէպի գոթերը, Այնտեղ կը պահեմ բազուկների մէջ այս գանձն ապահով Եւ ես կայսրուհու բարեկամներին թաքուն կը տեսնեմ։ Գնա՛նք, իմ փոքրիկ, հաստաշուրթ ստրուկ, ես քեզ կը տանեմ, Քանզի դու եղար այս տագնապների ամբողջ պատճառը. Դու պիտի ուտես վայրի արմատներ ու հատապտուղ, Դու պիտի խմես կաթի շիճուկը, ծծես կուրծքն այծի, Դու պիտի ապրես քարանձաւի մէջ, Որ դառնաս զինուոր եւ քաջ զօրավար։
Courons vers les Goths, aussi rapidement que l'hirondelle, pour y placer le trésor qui est dans mes bras, et saluer secrètement les amis de l'impératrice. Allons, viens, petit esclave aux lèvres épaisses; je t'emporte d'ici; car c'est toi qui nous donnes de l'embarras; je te ferai nourrir de fruits sauvages, de racines, de lait caillé, de petit-lait; je te ferai téter la chèvre, et loger dans une caverne, et je t'élèverai pour être un guerrier, et commander un camp.

*[Exits holding his son.]*

][][

ACT IV. SCENE III.
Rome. A public place. Titus enters, bearing arrows with letters on the ends of them; with him Marcus, Young Lucius, Publius, Sempronius, and Caius. They all carry bows.

TITUS.
Առաջ եկ, Մարկոս։ Ահա ճանապարհին, իմ ազգականներ։ Դեհ, ցոյց տուր, տղաս, թէ դու ինչպէս ես աղեղը ձգում, Ճիշտ ձգիր, եւ նետն ուղիղ կը թռչի նշանակէտին, աստրեան լքել է երկիրը։ Մարկ, յիշիր, թէ նա ինչպէս սլացաւ, ինչպէս թաքնուեց։ Բարեկամներ, վերցրէք ձեր գործիքները, Դուք, զարմիկներս, գնացէք չափէք խորքը ովկիանի եւ այնտեղ նետէք ձեր ուռկանները, Գուցէ դուք նրան գտնէք ծովի մէջ, Բայց արդարութիւն ծովում էլ չկայ, ինչպէս որ չկայ ցամաքի վրայ։ Ո՛չ, ո՛չ, Պուբլիոս եւ Սիմպրօնիոս, դուք պէտք է փորէք Բահ ու բրիչով եւ հասնէք ուղիղ կենտրոնը երկրի եւ երբ որ մտնէք հողը Պլուտոնի, Աղաչում եմ ձեզ, յանձնէք դուք նրան իմ խնդրագիրը եւ ասէք, որ ձեր Անդրոնիկոսը, Որ երախտամոռ Հռոմում տեսաւ վիշտ ու տառապանք, Արդարութիւն է խնդրում իրենից։ Ա՛խ, Հռո՛մ, Հռո՛մ, քեզ վշտացրի ես այն ժամանակ, Երբ փոխանցեցի ժողովրդի ձայնն այն ստոր մարդուն, Ով այսպէս դաժան վարւում է ինձ հետ։ Ուրեմն, գնացէ՛ք։ Եւ ես խնդրում եմ՝ ուշադիր եղէք, Խուզարկէք բոլոր ռազմանաւերը, Կայսրը կարող է նրան աքսորել նաւերից մէկում, Եւ այն ժամանակ մենք որտե՞ղ փնտրենք արդարութիւնը։
Viens, Marcus, viens. Cousins, voici le chemin. Allons, mon enfant, voyons ton adresse à tirer. Vraiment, tu ne manques pas le but, et la flèche y arrive tout droit. Terras Astræa reliquit. Rappelez-vous bien, Marcus. Elle est partie, elle est partie. Monsieur, voyez à vos outils. Vous, mes cousins, vous irez sonder l'Océan, et vous jetterez vos filets; peut-être

trouverez-vous la justice au fond de la mer; et cependant il y en a aussi peu sur mer que sur terre. Non, Publius et Sempronius, il faut que vous fassiez cela; c'est vous qui devez creuser avec la bêche et la pioche, et percer le centre le plus reculé de la terre; et lorsque vous serez arrivés au royaume de Pluton, je vous prie, présentez-lui cette requête: dites-lui que c'est pour demander justice et implorer son secours; et que c'est de la part du vieil Andronicus, accablé de chagrins dans l'ingrate Rome. Ah! Rome! Oui, oui, j'ai fait ton malheur le jour que j'ai réuni les suffrages du peuple sur celui qui me tyrannise ainsi. Allez, partez, et je vous prie, soyez tous bien attentifs, et ne laissez pas passer un seul vaisseau de guerre sans y faire une exacte recherche; ce méchant empereur pourrait bien l'avoir embarquée pour l'écarter d'ici, et alors, cousins, nous pourrions appeler en vain la Justice.

MARCUS.
Օ՜ իմ Պուբլիոս, ծանր չէ՞ տեսնել Քո հօրեղբօրը այսպէս խանգարուած։
O Publius! n'est-il pas déplorable de voir ainsi ton digne oncle dans le délire?

PUBLIUS.
Դրա համար էլ մենք օր ու գիշեր Պէտք է ուշադիր հետեւենք նրան եւ տանենք նրա քմահաճոյքը բարեսրտութեամբ, Մինչեւ ժամանակն ամոքիչ մի դեղ ուղարկի նրան։
C'est pour cela qu'il nous importe beaucoup, seigneur, de ne pas le quitter, de veiller sur lui jour et nuit, et de traiter le plus doucement que nous pourrons sa folie, jusqu'à ce que le temps apporte quelque remède salutaire à son mal.

MARCUS.
Իմ ազգականներ, նրա վշտերին ոչ մի դեղ չկայ։ Գնանք գոթերի ճամբարն հեռաւոր եւ պատերազմով Պատժենք Հռոմին, որն եղաւ այսքան ապերախտ ու նենգ, Եւ վրէժ առնենք կայսրից դաւաճան։
Cousins, ses chagrins sont au-dessus de tous les remèdes. Joignons-nous aux Goths; et par une guerre vengeresse, punissons Rome de son ingratitude, et que la vengeance atteigne le traître Saturninus.

TITUS.
Պուբլիոս եւ դուք, իմ բարեկամներ, չգտա՞ք նրան։
Eh bien, Publius? eh bien, messieurs, l'avez-vous rencontré?

PUBLIUS.
Օ՜ ո՛չ, հօրեղբայր, բայց Պլուտոնը ծանուցում է ձեզ, Որ ձե՛ր վրէժը դժոխքը կ'առնի, եթէ դժոխքից դուք վրէժ խնդրէք։ Գալով ձեր խնդրած արդարութեանը, Ապա երկնքում կամ թէ մի այլ տեղ նա զբաղուած է Իւպիտերի հետ, Այնպէս որ պէտք է որոշ ժամանակ սպասել նրան։
Non, seigneur; mais Pluton vous envoie dire que si vous voulez obtenir vengeance de l'enfer vous l'aurez. Quant à la Justice, elle est occupée, à ce qu'il croit, dans le ciel avec Jupiter, ou quelque part ailleurs; en sorte que vous êtes forcé d'attendre un peu.

TITUS.
Աւա՛ղ, Պլուտոնը կերակրում է ինձ ուշացումներով։ Ես պիտի սուզուեմ կրակէ լիճը սանդարամետի Եւ Աքերոնի խորքից դուրս քաշեմ արդարութիւնը՝ բռնած կրունկից։ Մարկոս, մենք ոչ թէ մայրիներ ենք սէգ, այլ թփեր ենք լոկ, Չունենք վիթխարի, ոսկրոտ կազմուածք կիկլոպների պէս։ Թէեւ կոփուած ենք

պողպատից, Մարկոս, Բայց մեր մէջքերը չեն կարող կրել դժբախտութիւնը։ Երբ արդարութիւն չկայ դժոխքում ու երկրի վրայ, Պէտք է աղաչել միայն երկնքին, Թող աստուածները մեզ արդարութիւն ուղարկեն երկիր, Որ նա վրէժ առնի մեր վշտի համար։ Դեհ, գործի անցնենք։ Մարկոս, դու հմուտ աղեղնաձիգ ես։
Il me fait tort de m'éconduire ainsi avec ses délais; je me plongerai dans le lac brûlant de l'abîme, et je saurai arracher la Justice de l'Achéron par les talons. Marcus, nous ne sommes que des roseaux; nous ne sommes pas des cèdres; nous ne sommes pas des hommes charpentés d'ossements gigantesques, ni de la taille des cyclopes; mais nous sommes de fer, Marcus, nous sommes d'acier jusqu'à la moelle des os, et cependant nous sommes écrasés de plus d'outrages que notre dos n'en peut supporter. Puisque la Justice n'est ni sur la terre ni dans les enfers, nous solliciterons le ciel et nous fléchirons les dieux pour qu'ils envoient la Justice ici-bas pour venger nos affronts. Allons, à l'ouvrage. Vous êtes un habile archer, Marcus.

*[Hands out the arrows.]*

TITUS [cont.]
Յուպիտեր - սա քեզ՝ Ապոլոն , Մարս ,- սա՝ ինձ, Սա քեզ, թոռնիկս, ուղղիր Պալլասին, սա՝ Մերկուրիին, Այս նետն էլ, Քայոս, Սատուրնին, բայց ոչ Սատուրնինոսին, Քանզի այդ նոյնն է, թէ քամու դիմաց նետեր արձակես։ Պատրաստուիր, տղաս, դու էլ, իմ եղբա՛յր։ Երբ ասեմ, այնժամ նետերն արձակէք։ Հաւատացէք ինձ, գրելուց առաջ լաւ եմ մտածել, եւ ոչ մի աստուած իմ աղերսանքին անմասն չի մնում։
Ad Jovem, voilà pour toi. Ici, ad Apollinem, ad Martem. C'est pour moi-même. Ici, mon enfant, à Pallas. Ici, à Mercure. A Saturne, Caïus, et non pas à Saturninus. Il vaudrait autant tirer contre le vent. Allons, à l'oeuvre, enfant. Marcus, tire quand je te l'ordonnerai. Sur ma parole, j'ai écrit cette liste à merveille: il ne reste pas un dieu qui n'ait sa requête.

MARCUS.
Իմ ազգականներ, ձեր բոլոր նետերն ուղղէք պալատին. Մենք պէտք է կայսրի հպարտութիւնը խիստ վիրաւորենք։ Նրանք նետերն արձակում են։
Cousins, lancez toutes vos flèches vers la cour, nous mortifierons l'empereur dans son orgueil.

TITUS.
Օ՜ հրաշալի է, ապրե՛ս Լուցիոս, Կոյսի գիրկն ընկար։ Այժմ նետն ուղղիր դէպի Պալլասին։
Allons amis, tirez. A merveille, Lucius. Cher enfant, c'est dans le sein de la Vierge, envoie-la à Pallas.

MARCUS.
Նայիր, եղբայրս, նշան եմ բռնում լուսինից այն կողմ, Նամակդ է կարդում Իւպիտերն արդէն։
Seigneur, je vise un mille par delà la lune: de ce coup, votre lettre est arrivée à Jupiter.

TITUS.
Ա՜խ, Պուբլիոս, Պուբլիոս, այս ի՞նչ արեցիր, Նայի՛ր, քո դիպուկ նետը թռցրեց Ցուլի եղջիւրը։
Ah! Publius, Publius, qu'as-tu fait? Vois, vois, tu as coupé une des cornes du Taureau.

MARCUS.
Ա՜յ քեզ զուարճանք։ Հէնց որ Պուբլիոսն իր նետն արձակեց, Վիրաւոր Ցուլը այնպիսի հարուած հասցրեց

Խոյին, Որ սրա երկու եղջիւրներն ընկան ուղիղ պալատը։ Ո՞վ պիտի գտնէր այդ եղջիւրները, եթէ ոչ միայն պոռնիկ կայսրուհին։ Եւ ծիծաղելով այդ պոռնկուհին ասել է մաւրին, Որ մաւրը չունի մի այլ ընտրութիւն, Քան այն, որ տանի այդ եղջիւրները իր կայսրին նուէր։
C'était là le jeu, seigneur; quand Publius a lancé sa flèche, le Taureau, dans sa douleur, a donné un si furieux coup au Bélier que les deux cornes de l'animal sont tombées dans le palais; et qui les pouvait trouver que le scélérat de l'impératrice? Elle s'est mise à rire, et elle a dit au More qu'il ne pouvait s'empêcher de les donner en présent à son maître.

TITUS.
Այդպէս էլ կ'անենք։ Թող ուրախութիւն պարգեւի Աստուած մեր միապետին։ Մտնում է մի խեղկատակ՝ ձեռքին զամբիւղ, մէջը՝ երկու աղաւնի։ Լուրեր երկնքից։ Մարկոս, փոստն եկաւ։ Ի՞նչ լուր, բարեկամ։ Նամակնե՞ր ունես, Վերջապէս, ի՞նչ է Իւպիտերն ասում, արդեօք բերե՞լ ես ինձ արդարութիւն։
Oui, cela va bien: Dieu donne la prospérité à votre grandeur! Entre un paysan avec un panier et une paire de pigeons. Des nouvelles, des nouvelles du ciel! Marcus, le message est arrivé.--Eh bien, l'ami, quelles nouvelles apportes-tu? as-tu des lettres? me fera-t-on justice? Que dit Jupiter?

[A Clown enters with a basket and two pigeons in it.]

CLOWN.
Ո՞վ, կախաղան բարձրացնողը՞։ Նա ասում է, որ մահապատիժը յետաձգուել է, որովհետեւ դատապարտեալին կախելու է յաջորդ շաբաթ։
Quoi, le faiseur de potences? Il dit qu'il les a fait descendre, parce que l'homme ne doit être pendu que la semaine prochaine.

TITUS.
Բայց ես հարցնում եմ քեզ, թէ ի՞նչ է ասում Իւպիտերը։
Que dit Jupiter? Voilà ce que je te demande.

CLOWN.
Ափսո՛ս, պարոն, որ ես չեմ ճանաչում Իւպիտերին։ Իմ ամբողջ կեանքում ոչ մի անգամ չեմ խմել նրա հետ։
Hélas, monsieur, je ne connais pas Jupiter, je n'ai bu jamais avec lui de ma vie.

TITUS.
Անպիտա՛ն, միթէ՞ դու չես նամակներ բաժանողը։
Comment, coquin, n'es-tu pas le porteur?

CLOWN.
Այո՛, պարոն, ես միայն իմ աղաւնիներն եմ բաժանում։
Oui, monsieur, de mes pigeons: de rien autre chose.

TITUS.
Նշանակում է՝ դու երկնքի՞ց ես յայտնուել։
Quoi, ne viens-tu pas du ciel?

CLOWN.
Ասում ես՝ երկնքի՞ց։ Աւա՜ղ, պարոն, այնտեղ երբեք ես չեմ եղել։ Աստուած փրկի, որ ջահէլ օրերիս երկինք չգնամ։ Ես աղաւնիներիս հետ գնալու եմ պլեբէյների ատեան, որպէսզի իմ մօրեղբօր ու կայսրի սպասաւորներից մէկի միջեւ ծագած վէճը կարգաւորեմ։
Du ciel? Hélas, monsieur, jamais je n'ai été là: Dieu me préserve d'être assez audacieux pour prétendre au ciel dans ma jeunesse! Quoi! je vais tout simplement avec mes pigeons au Tribunal peuple, pour arranger une matière de querelle entre mon oncle et un des gens de l'impérial.

MARCUS.
Եղբայրս, այսպիսի յարմար առիթ էլ չի լինի քո գործի համար։ Թող ներկայացնի քո խնդրագիրը եւ թող քո անունից նա կայսրին յանձնի աղաւնիներին։
Allons, seigneur, cela est juste ce qu'il faut pour votre harangue. Qu'il aille remettre les pigeon
s à l'empereur de votre part.

TITUS.
Ասա, կարո՞ղ ես շէնք ու շնորհքով յանձնել խնդրագիրը կայսրին։
Dis-moi, peux-tu débiter une harangue à l'empereur avec grâce?

CLOWN.
Ո՜չ, ճիշտն ասած։ Պարոն, իմ ամբողջ կեանքում շէնք ու շնորհքով ոչ մի բան չեմ արել։
Franchement, monsieur, je n'ai jamais pu dire grâces de ma vie.

TITUS.
Մօտ արի, տղայ, խելքիդ զօռ մի՛ տուր, Բայց կայսրին յանձնիր աղաւնիները եւ դու կը ստանաս Իմ միջնորդութեամբ նրա ձեռքերից քո վճիռն արդար. Սպասիր, այժմ վերցրու այս ոսկին քո գործի համար։ Շտապ ինձ բերէք թանաք ու գրիչ, Կարո՞ղ ես, ասա՛, շնորհքով յանձնել դու մի խնդրագիր։
Allons, drôle, approche: ne fais plus de difficulté; mais donne tes pigeons à l'empereur. Par moi, tu obtiendras de lui justice. Arrête, arrête! En attendant, voilà de l'argent pour ta commission. Donnez-moi une plume et de l'encre. L'ami, peux-tu remettre une supplique avec grâce?

CLOWN.
Այո՛, պարոն։
Oui, monsieur.

TITUS.
Ահա խնդրագիրը։ Երբ դու կը ներկայանաս կայսրին, նախ՝ ծունր կ'իջնես, յետոյ կը համբուրես նրա ոտքը եւ կը յանձնես քո աղաւնիներին ու կը սպասես վարձատրութեանդ։ Ես կը լինեմ մօտակայքում։ Տես, հա՛,

գործիր, ինչպէս ասում եմ։

Eh bien, voilà une supplique pour toi. Et quand tu seras introduit près de l'empereur, dès le premier abord il faut te prosterner; ensuite lui baiser les pieds; et alors remets-lui tes pigeons, et alors attends ta récompense. Je serai tout près, l'ami: vois à t'acquitter bravement de ce message.

## CLOWN.

Պարոն, ինձ վստահիր եւ ինձ թող մենակ։

Je vous le garantis, monsieur: laissez-moi faire.

## TITUS.

Դու դանակ ունե՞ս։ Մօտ արի, ցոյց տուր։ Մարկոս, դանակն առ եւ լաւ փաթաթիր իմ խնդրագրով, Որը գրել է մի խեղճ աղերսու։ [To the Clown.] Երբ խնդրագիրս կը յանձնես կայսրին, Եկ, դուռս բախիր եւ ասա, թէ նա ինչ է ինձ ասում։

Dis, as-tu un couteau? Voyons-le. Marcus, plie-le dans la harangue: car tu l'as faite sur le ton d'un humble suppliant. [To the Clown.] Et lorsque tu l'auras donnée à l'empereur, reviens frapper à ma porte, et dis-moi ce qu'il t'aura dit.

## CLOWN.

Աստուած ձեզ հետ, պարոն։ Ես կը գամ։ Գնում է։

Dieu soit avec vous, monsieur! Je le ferai.

## TITUS.

Դեհ, գնանք, Մարկոս, հետեւիր ինձ, Պուբլիոս։ Գնում են։

Venez, Marcus, allons. Publius, suis-moi.

*[All exit.]*

][[

## ACT IV. SCENE IV.

Rome. Before the palace. The Emperor, Empress, Demetrius and Chiron enter followed by various Lords. The Emperor holds the arrows in his hand that Titus shot at him.

## SATURNINUS.

Պատրիկներ, սրանք վիրաւորանք չե՞ն։ Տեսե՞լ է մէկը Հռոմում կայսրին այսպէս ընկճուած, այսպէս խռովեալ, եւ ո՞վ է այսպէս արհամարհանքով նրա դէմ կանգնել, Ո՞վ է անարգել նրան անաչառ վճռի համար։ Պատրիկներ, գիտէք, ինչպէս եւ գիտեն աստուածներն հզօր, Թէպէտ բզզում են մեր խաղաղութեան խառնակիչները մարդկանց ականջին, Որ մենք վարուել ենք միայն օրէնքով Անդրոնիկոսի խռովարար ու չար տղաների հետ։ Եւ եթէ նրա դատողութիւնը մթագնել է իր իսկ վշտերից, Մենք պիտի այսպէս հանդուրժե՞նք նրա քմահաճոյքը, Նրա զայրոյթը, նրա մոլուցքը, յարձակումները։ Եւ նա գրում է այժմ երկնքին հատուցման համար. Սա՝ Ապոլլոնին, սա՝ Իւպիտերին, սա՝ Մերկուրիին, Սա՝ պատերազմի մեծազօր աստծուն։ Այդ անուշաբոյր խնդրագրերը պէտք է թռչէին Մեծաշուք Հռոմի լայն փողոցներով։ Եւ

ի՞նչ են սրանք, եթէ ոչ միայն պարսաւագրեր՝ ընդդէմ սենատի, Եթէ ոչ միայն հրապարակում, իբրեւ Հռոմում չիք արդարութիւն, Եւ միթէ՞ սրանք դառն կատակ չեն, իմ բարեկամներ: Բայց քանի դեռ կամ, նրա այս շինծու խենթութիւնները Չեն կարող լինել այս յանդգնութեան ապաստարաններ, Եւ նա, եւ նրա ամբողջ սերունդը պէտք է իմանայ, Որ արդարութիւնն ապրում է իմ մէջ: Թող հանգիստ քնի արդարութիւնը, քանզի արթնացաւ՝ Նա մոլեգնօրէն կը ջնջի գոռոզ դաւադիրներին, որ դեռ ապրում են:
Que dites-vous, seigneurs, de ces outrages? A-t-on jamais vu un empereur de Rome insulté, dérangé et bravé ainsi en face, et traité avec ce mépris pour avoir déployé une justice impartiale? Vous le savez, seigneurs, aussi bien que les dieux puissants; quelques calomnies que les perturbateurs de notre paix murmurent à l'oreille du peuple, il ne s'est rien fait que de l'aveu des lois contre les fils téméraires du vieil Andronicus. Et parce que ses chagrins ont troublé sa raison, faudra-t-il que nous soyons ainsi persécutés de ses vengeances, de ses accès de frénésie, et de ses insultes amères? Le voilà maintenant qui appelle le ciel pour le venger. Voyez, voici une lettre à Jupiter, une autre à Mercure; celle-ci à Apollon; celle-là au dieu de la guerre. De jolis écrits à voir voler dans les rues de Rome! Quel est le but de ceci, si ce n'est de diffamer le sénat et de nous flétrir en tous lieux du reproche d'injustice? N'est-ce pas là une agréable folie, seigneurs? Comme s'il voulait dire qu'il n'y a point de justice à Rome. Mais si je vis, sa feinte démence ne servira pas de protection à ces outrages. Lui et les siens apprendront que la justice respire dans Saturninus; et si elle sommeille, il la réveillera si bien, que dans sa fureur elle fera disparaître le plus impudent des conspirateurs qui soient en vie.

TAMORA.
Ողորմած տէր իմ, իմ Սատուրնինուս, Իմ կեանքի Աստուած, իմ ողջ մտքերի վսեմ տիրակալ, Մեղմիր զայրոյթդ ու զիջող եղիր ծերունու հանդէպ, Իր տղաների սիրուց նա դրդուած՝ մեղքեր է գործում, Նրանց կորուստը խոցել է նրա սիրտը խորապէս, Աւելի լաւ է սփոփել նրա դառնացած հոգին, Քան հետապնդել վիրաւորանքից զայրացած սրտով: [Aside.] Այո, Տամորա, դու կին խորամանկ, դու պէտք է այսպէս միշտ շողոքորթես, Բայց արդէն, Տիտոս, դու ճանկս ես ընկել, ես պիտի հեղեմ քո կեանք-արիւնը, Եթէ Ահարոնն իմաստուն լինի, ամէն ինչ փրկուած է, Խարիսխ ենք գցել նաւահանգստում:
Mon gracieux seigneur, mon cher Saturninus, maître de ma vie, souverain roi de toutes mes pensées, calmez-vous et supportez les défauts de la vieillesse de Titus; c'est l'effet des chagrins qu'il ressent de la perte de ses vaillants fils, dont la mort l'a frappé profondément et a blessé son coeur. Prenez pitié de son déplorable état, plutôt que de poursuivre pour ces insultes le plus faible ou le plus honnête homme de Rome. [Aside.] Oui, il convient à la pénétrante Tamora de les flatter tous. Mais, Titus, je t'ai touché au vif, et tout le sang de ta vie s'écoule: si Aaron est seulement prudent, tout va bien, et l'ancre est dans le port.

*[The Clown enters.]*

TAMORA [cont.]
Ի՞նչ կայ, բարի մարդ, մեզ հետ գո՞րծ ունես:
Eh bien, qu'y a-t-il, mon ami? Veux-tu nous parler?

CLOWN.
Այո, եթէ ձերդ ողորմածութիւնը կայսրն է:
Oui, vraiment, si vous êtes la Majesté impériale.

TAMORA.
Կայսրուհին ես եմ, իսկ ահա այնտեղ նստած է կայսրը։
Je suis l'impératrice. Mais voilà l'empereur assis là-bas.

CLOWN.
Ճիշտ որ կայսրն է։ Աստուած եւ սուրբ Ստեֆանը քեզ յաջողութիւն են մաղթում։ Ես բերել եմ քեզ մի նամակ ու մի զոյգ աղաւնի։ Սատուրնինոսը կարդում է նամակը։
C'est lui que je demande. Que Dieu et saint Étienne vous donnent le bonheur. Je vous ai apporté une lettre, et une paire de colombes que voilà.

*[Saturninus reads the letter.]*

SATURNINUS.
Հէյ, տարէ՛ք նրան եւ իսկոյն կախէք։
Qu'on le saisisse et qu'on le pende sur l'heure.

CLOWN.
Ես ինչքա՞ն ոսկի պէտք է ստանամ։
Combien aurai-je d'argent?

TAMORA.
Չքուի՛ր, անպիտա՛ն, քեզ պիտի կախեն։
Allons, misérable, tu vas être pendu.

CLOWN.
Կախե՞ն։ Երդւում եմ Աստուածամօրով, որ վիզս բերել եմ լաւ վերջի համար։ Զինեալ պահակները տանում են նրան։
Pendu! Par Notre-Dame, j'ai donc apporté ici mon cou pour un bel usage!

*[Guards drag him off stage.]*

SATURNINUS.
Ի՜նչ վիրաւորանք՝ անհանդուրժելի ու դժոխակամ, Ես պիտի տանե՞մ այս հրէշային ստորութիւնը։ Ես գիտեմ, թէ այս պատմութիւնները ով է յօրինել, Բայց ինչպէ՞ս կրեմ այս բոլորն իմ մէջ։ Կարծես թէ նրա դաւաճան որդիք, որ սպանել են մեր Բասիանոսին, Ոչ թէ օրէնքով, այլ իմ քմահաճ հրամանով են պատիժը կրել։ Այդ սրիկայի մազերից բռնած՝ քարշ տուէք այստեղ, Ո՛չ տարիք, ո՛չ փառք չեն կարող փրկել քեզ, Անդրոնիկոս, Քեզ պիտի պատժեմ քո ամբարտաւան հեգնանքի համար։ Օ՜ խելացնոր թշուառ սատանայ, ինձ բարձրացրիր Այն քաղցր յոյսով, որ մի օր իշխես ինձ ու Հռոմին։
Des outrages sanglants et intolérables! Endurerai-je plus longtemps ces odieuses scélératesses? Je sais d'où part encore cette lettre: cela peut-il se supporter? Comme si ses traîtres enfants, que la loi a condamnés à mourir pour le meurtre de notre frère, avaient été injustement égorgés par mon ordre! Allez, traînez ici ce scélérat par les cheveux: ni

son âge ni ses honneurs ne lui donneront des priviléges. Va, pour cette audacieuse insulte, je serai moi-même ton bourreau, rusé et frénétique misérable, qui m'aidas à monter au faîte des grandeurs dans l'espérance que tu gouvernerais et Rome et moi.

*[ Émilius enters.]*

SATURNINUS [cont.]
Ի՞նչ լուր, Էմիլիոս։
Quelles nouvelles, Émilius?

ÉMILIUS.
Զինուէ՛ք, պատրիկներ։ Հռոմն այսպիսի վտանգ չէր տեսել, Գոթերը նորից ոտքի են կանգնել եւ վճռական մարդկանց խմբերով, ծարաւ կողոպտման, Գալիս են այստեղ։ Նրանց վարում է Անդրոնիկոսի որդին՝ Լուցիոսը, Վրէժից այրուած՝ սպառնում է նա հաշիւներ մաքրել, Ինչպէս մաքրում էր Կորիոլանը։
Aux armes, aux armes, seigneurs! Jamais Rome n'en eut plus de raisons! Les Goths ont rassemblé des forces; et avec des armées de soldats courageux, déterminés, avides de butin, ils marchent à grandes journées vers Rome, sous la conduite de Lucius, le fils du vieil Andronicus: il menace dans le cours de ses vengeances d'en faire autant que Coriolan.

SATURNINUS.
Գոթերի գլուխ պատերազմասէր Լուցիո՞սն է անցել, Այս լուրից ահա մարմինս է սառչում, Եւ ես կախում եմ դժբախտ գլուխս, ինչպէս ծաղիկը՝ Սառնամանիքից, կամ ինչպէս խոտը՝ խորշակից զարկուած։ Այո՛, աղէտը մօտենում է մեզ, նրան սիրում է ժողովուրդն Հռոմի, Ես ինքս եմ լսել, երբ շրջում էի շորերս փոխած, Օ՛ ասում էին, որ անարդար է Լուցիոսն աքսորուած, Եւ փափագում են, որ Լուցիոսն իրենց կայսրը դառնայ։
Le belliqueux Lucius est-il le général des Goths? Cette nouvelle me glace; et je penche ma tête comme les fleurs frappées de la gelée ou l'herbe battue par la tempête. O! c'est maintenant que nos chagrins vont commencer: c'est lui que le commun peuple aime tant: moi-même, lorsque vêtu en simple particulier je me suis confondu avec eux, je leur ai souvent ouï dire que le bannissement de Lucius était injuste, et souhaiter que Lucius fût leur empereur.

TAMORA.
Ինչո՞ւ ես, տէր իմ, այսպէս վախենում, քաղաքն ամուր չէ՞։
Pourquoi trembleriez-vous? Votre ville n'est-elle pas forte?

SATURNINUS.
Քաղաքն ամուր է, բայց բնակիչներն Անդրոնիկոսի որդուն են սիրում Եւ կ'ելնեն իմ դէմ, որպէսզի օգնեն այդ խառնակիչին։
Oui, mais les citoyens favorisent Lucius, et ils se révolteront pour lui venir en aide.

TAMORA.
Արքայ, դարձիր դու մտքերիդ արքայ, ինչպէս անունդ է, Միթէ՞ կը խամրի փայլը արեւի, Երբ մժղուկները թռչում են նրա շողերի առաջ։ Արծիւն է թողնում, որ թռչնակները ուրախ դայլայլեն, Բայց հոգ չի տանում,

թէ ինչ են երգում, Քանզի նա գիտէ, որ իր թեւերի ստուերների տակ Ցանկացած պահին կը լռեցնի երգերը նրանց։ Այսպէս կարող ես դու լռեցնել այդ յիմար մարդկանց, Թող զուարճանայ քո ոգին նորից, քանզի, կայսր իմ, Ես պիտի ծերուկ Անդրոնիկոսի միտքը գրաւեմ Բառերով, որոնք աւելի քաղցր են ու վտանգաւոր, Քան թէ առուոյտը ոչխարի համար, քան խայծը՝ ձկան, Սակայն ոչխարը ապականւում է հիւթալի կերով. Իսկ ձուկը՝ խայծով։

Roi, prenez les sentiments d'un empereur, comme vous en portez le titre. Le soleil est-il éclipsé par les insectes qui volent devant ses rayons? L'aigle permet aux petits oiseaux de chanter et ne s'embarrasse pas de ce qu'ils veulent dire par là, certain qu'il peut, de l'ombre de ses ailes, faire taire à son gré leurs voix. Vous pouvez en faire autant pour la populace insensée de Rome. Reprenez donc courage; et sachez, empereur, que je saurai charmer le vieil Andronicus par des paroles plus douces, mais plus dangereuses que ne l'est l'appât pour le poisson, et le miel du trèfle fleuri pour la brebis: l'un meurt blessé par l'hameçon, et l'autre empoisonné par une pâture délicieuse.

## SATURNINUS.

Բայց նա մեզ համար չի խնդրի որդուն։

Mais il ne voudra pas prier son fils pour nous.

## TAMORA.

Եթէ Տամորան աղերսի, չի մերժի, Քանզի կարող եմ ես սիրաշահել ու լցնել նրա ծեր լսելիքը Ոսկեայ խոստումով։ Եւ եթէ նրա սիրտն ըմբոստանայ, Եւ ականջները համրանան մէկից, Դարձեալ երկուսն էլ՝ սիրտն ու ականջը, խօսքս կը լսեն։

Si Tamora l'en prie, il le voudra; car je puis flatter sa vieillesse et l'endormir par des promesses dorées: et quand son coeur serait presque inflexible et ses vieilles oreilles sourdes, son coeur et son oreille obéiraient à ma langue.

*[Tamora addresses Émilius.]*

## TAMORA [cont.]

Էմիլիոս, գնա որպէս մեր դեսպան եւ ասա՝ կայսրը խնդրում է, Լուցիոս, քեզ հետ բանակցել եւ տեսակցութեան վայր է նա ընտրում Քո հօր՝ ծերունի Տիտոսի տունը։

Émilius, allez, précédez-nous, et soyez notre ambassadeur. Dites-lui que l'empereur demande une conférence avec le brave Lucius, et fixe le lieu du rendez-vous dans la maison de son père, le vieil Andronicus.

## SATURNINUS.

Գնա՛, Էմիլիոս, պատուով կատարիր մեր հրամանը, Եւ եթէ Լուցիոսն ուզենայ պատանդ զգուշութեան համար, Թող ինքն էլ ընտրի ում որ կամենայ։

Émilius, acquittez-vous honorablement de ce message; et s'il exige des otages pour sa sûreté, dites-lui de demander les gages qu'il préfère.

## ÉMILIUS.

Տէր իմ, ճշտօրէն ես կը կատարեմ ձեր հրամանը։

Je vais exécuter vos ordres.

*[Émilius exits.]*

### TAMORA.

Իսկ ես կը գնամ ծեր Տիտոսի մօտ, կը մեղմացնեմ, Իմ ամբողջ արուեստն ի գործ կը դնեմ, Որպէսզի խլեմ գոռոզ Լուցիոսին խիզախ գոթերից։ Սիրելի կայսր, դու զուարթօրէն վերստին ժպտա Եւ թաղիր քո վախն ու տագնապները իմ արուեստի մէջ։

Moi, je vais aller trouver le vieux Andronicus, et l'adoucir par toutes les ressources de l'art que je possède, pour arracher aux belliqueux Goths le fier Lucius. Allons, cher empereur, reprenez votre gaieté; ensevelissez toutes vos alarmes dans la confiance en mes desseins.

### SATURNINUS.

Քեզ յաջողութիւն, համոզիր նրան։ Գնում են։

Allez; puissiez-vous réussir et le persuader!

*[All exit.]*

]|[

## ACT V. SCENE I.

Plains near Rome. Lucius enters with an army of Goths.

### LUCIUS.

Փորձուած ռազմիկներ եւ հաւատարիմ իմ բարեկամներ, Ես մեծ Հռոմից նամակներ ունեմ, Որոնք յայտնում են, թէ ինչպէս իրենք ատում են կայսրին Եւ ինչպէս են մեզ փափագում տեսնել, Ուրեմն, առաջնորդներ, ինչպէս վայել է ձեր տիտղոսներին, եղէք հրամայող, Եւ իւրաքանչիւր վնասի դիմաց, որ հասցրել է գոռոզ Հռոմը, Դուք եռապատիկ վարձքը պահանջէք։

Guerriers éprouvés, mes fidèles amis, j'ai reçu des lettres de la superbe Rome, qui m'annoncent la haine que les Romains portent à leur empereur, et combien ils aspirent de nous voir. Ainsi, nobles chefs, soyez ce qu'annoncent vos titres, fiers et impatients de venger vos affronts, et tirez une triple vengeance de tous les maux que Rome vous a causés.

### UN CHEF DES GOTHS.

Դու, մեծ Տիտոսի հրաշալի զարմ, Ում անունն առաջ սպառնում էր մեզ, Այժմ ներշնչում յոյս ու զօրութիւն, Ում հրաշագործ քաջութիւններին ու արարքներին արժանապատիւ Երախտամոռ Հռոմը հատուցեց միայն արհամարհանքով, Դու մեզ վստահիր, կը նետուենք այնտեղ, ուր առաջնորդես, Նման ամառուայ տօթակէզ շոգի այն մեղուներին, Որ հետեւում են ծաղկած դաշտերով թռչող մայր մեղուին, Եւ մենք անիծեալ Տամօրայից մեր վրէժը կ'առնենք։

Brave rejeton sorti du grand Andronicus, dont le nom, qui nous remplissait jadis de terreur, fait maintenant notre confiance; vous, dont l'ingrate Rome paye d'un odieux mépris les grands exploits et les actions honorables, comptez sur nous: nous vous suivrons partout où vous nous conduirez; comme dans un jour brûlant d'été les abeilles, armées de leurs dards, suivent leur roi aux champs fleuris, et nous nous vengerons de l'exécrable Tamora.

## LES GOTHS.

Ինչ նա ասում է, կրկնում ենք մենք։

Et ce qu'il dit, nous le disons tous avec lui, nous le répétons tous d'une voix.

## LUCIUS.

Նրան խոնարհաբար շնորհակալութիւն, նոյնն էլ բոլորիդ, Բայց ո՞վ է գալիս եւ ո՞ւմ է բերում այս խիզախ գոթը։ Մտնում է մի գոթ՝ բերելով Ահարոնին, ձեռքերին իր երեխան։

Je lui rends grâces humblement, et à vous tous. Mais qui vient ici, conduit par ce robuste Goth?

*[A Goth enters, leading Aaron, with his Son in his arms.]*

## GARDE GOTHIQUE.

Փառապանծ Լուցիոս, մեր զօրքից հեռու ես դիտում էի աւերակները հին մենաստանի, եւ երբ փութաջան հայեացքս ուղղեցի այն շինութեանը, Յանկարծ լսեցի պարսպի տակից երեխայի ճիչ, Ես շտապեցի դէպի այդ ձայնը։ Շուտով ինձ հասան մանկանը զսպող այսպիսի բառեր. *«Լռի՛ր, սեւուկս, քո կէսը ես եմ, քո կէսը մայրդ է, Եթէ չմատնէր քո այդ սեւ գոյնը, թէ ինչ ծնունդ ես, Եւ քեզ բնութիւնն երկնէր մօրդ պէս, Ապա, անպիտան, դու կարող էիր մեծ կայսր դառնալ, Բայց երբեք սեւուկ հորթուկ չի ծնւում, Երբ ցուլն ու կովն են ծեան պէս սպիտակ։ Լռիր, անպիտան»* եւ կատաղաբար այսպէս մռնչաց, *«Քեզ պէտք է տանեմ քո հաւատարիմ ազնիւ գոթի մօտ, Երբ նա իմանայ, որ դու կայսրուհու որդին ես, սեւո՛ւկ, Նա քո մօր սիրոյն քեզ պէտք է գրկի խանդաղատանքով »:* Այս խօսքի վրայ սուրս քաշելով՝ նետուեցի վրան Եւ ահա նրան բերում եմ այստեղ, Որ հետը վարուես, ինչպէս ուզում ես։

Illustre Lucius, je me suis écarté de notre armée pour aller considérer les ruines d'un monastère, et comme j'avais les yeux fixés avec attention sur cet édifice en décadence, soudain j'ai entendu un enfant qui criait au pied d'une muraille. Me tournant du côté de la voix, j'ai bientôt entendu qu'on calmait l'enfant qui pleurait en lui disant: *«Paix, petit marmot basané qui tiens moitié de moi, moitié de ta mère! Si ta nuance ne décelait pas de qui tu es l'enfant; si la nature t'avait seulement donné la physionomie de ta mère, petit misérable, tu aurais pu devenir un empereur: mais quand le taureau et la génisse sont tous deux blancs comme lait, jamais ils n'engendrent un veau noir comme le charbon. Tais-toi, petit malheureux, tais-toi.»* Voilà comment on grondait l'enfant, et on continuait: *«Il faut que je te porte à un fidèle Goth, qui, quand il saura que tu es fils de l'impératrice, te prendra en affection pour l'amour de ta mère.»* Aussitôt, moi, je tire mon épée, je fonds sur ce More que j'ai surpris à l'improviste, et que je vous amène ici pour en faire ce que vous trouverez bon.

## LUCIUS.

Պատուարժան գոթ, մարմնացած դեւ է, Որ յափշտակեց Անդրոնիկոսի ձեռքը փառապանծ, Սա մարգարիտ է, որ կայսրուհու աչքը գրաւեց, Ահա եւ նրա խառնածին պտուղն այրուող կրքերի, Խօսիր, սպիտակ աչք, ո՞ւր էիր տանում սատանայատիպ Քո այս կենդանի ստոյգ պատկերը։

Vaillant Goth! voilà le démon incarné qui a privé Andronicus de sa main glorieuse: voilà la perle qui charmait les yeux de votre impératrice, et voilà le vil fruit de ses passions déréglées.

*[To Aaron.]*

LUCIUS [cont.]
Ինչո՞ւ չես խօսում, Հա՞մր ես ձեւանում, չե՞ս կարող նոյնիսկ մի բառ էլ ասել: Կախէք, զինուորներ, նրան այս ծառից, Հետն էլ՝ շնութեան պտուղը նրա:
Réponds, esclave à l'oeil blanc, où voulais-tu porter cette vivante image de ta face infernale? Pourquoi ne parles-tu pas? Quoi! es-tu sourd? Non; pas un mot? Une corde, soldats; pendez-le à cet arbre, et à côté de lui son fruit de bâtardise.

AARON.
Ձեռք չտաս նրան, նա արքայական տոհմից է սերւում:
Ne touche pas à cet enfant: il est de sang royal.

LUCIUS.
Չափից աւելի նման է հօրը, եւ նա բարութիւն չի անի երբեք: Նախ կախէք որդուն, որ հայրը տեսնի տանջանքը նրա, Եւ տանջուի նրա սիրտը հայրական: Հէ՜յ, սանդուղք բերէ՛ք, Բերում են մի սանդուղք: Ահարոնին ստիպում են բարձրանալ:
Il ressemble trop à son père pour valoir jamais rien. Allons, commencez par pendre l'enfant, afin qu'il le voie s'agiter; spectacle fait pour affliger son coeur de père. Apportez-moi une échelle.

*[A ladder brought, which Aaron is forced to climb.]*

AARON.
Փրկիր իմ որդուն Եւ տար իմ կողմից նրան կայսրուհուն: Եթէ խնդրանքս կատարես, Լուցիոս, քեզ զարմանալի բաներ ցոյց կը տամ, Որոնցից դու մեծ օգուտ կը ստանաս, Իսկ եթէ չուզես, թող Աստուած վարուի, ինչպէս կամենայ, Այլեւս ոչինչ չունեմ ասելու, եւ թող վրէժը շանթի բոլորիդ:
Lucius, épargne l'enfant, et porte-le de ma part à l'impératrice. Si tu m'accordes ma prière, je te révélerai d'étonnants secrets qu'il te serait fort avantageux de connaître; si tu me la refuses, arrive que pourra, je ne parle plus, et que la vengeance vous confonde tous!

LUCIUS.
Լա՛ւ, լա՛ւ, դեհ, պատմիր: Եթէ գոհ մնամ, քո որդին կ'ապրի, կը կերակրեմ:
Parle, et si ce que tu as à me dire me satisfait, ton enfant vivra, et je me charge de le faire élever.

AARON.
Եթէ գո՞հ մնաս: Լուցիոս, դու երբեք կասկած մի տանիր, Որ կը տանջուի քո հոգին սաստիկ, երբ որ ես պատմեմ, Քանզի ես պէտք է մէկ առ մէկ պատմեմ սպանութիւնից, Բռնաբարումից, կոտորածներից, Ես պէտք է պատմեմ սեւ գիշերն արած իմ սեւ գործերից, Գարշ արարքներից ու չարիքների դաւակցութիւնից, Որ լսելիքն են լցնում զայրոյթով, ինչ կատարել եմ անողորմաբար: Եւ այս բոլորը թաղուած կը մնայ իմ գերեզմանում, Եթէ ինձ չերդուես, որ կ'ապրի որդիս:
Si cela te satisfait? Oh! sois certain, Lucius, que ce que je te dirai affligera ton âme; car j'ai à t'entretenir de meurtres, de viol et de massacres, d'actes commis dans l'ombre de la nuit, d'abominables forfaits, de noirs complots de malice et de trahison, de scélératesses horribles à entendre raconter, et qui pourtant ont été exécutées par pitié. Tous ces secrets seront ensevelis par ma mort, si tu ne me jures pas que mon enfant vivra.

LUCIUS.
Պատմիր, ինչ գիտես, եւ քո երեխան, ասում եմ, կ'ապրի։
Révèle ta pensée; je te dis que ton enfant vivra.

AARON.
Երդուիր՝ կը պատմեմ։
Jure-le, et puis, je commencerai.

LUCIUS.
Բայց ինչո՞վ երդուեմ, չէ՞ որ դու Աստծուն չես էլ հաւատում։ Ինչպէ՞ս կարող ես երդմանս հաւատալ։
Par qui jurerai-je? Tu ne crois à aucun dieu, et dès lors comment peux-tu te fier à un serment?

AARON.
Եւ եթէ նոյնիսկ չհաւատայի։ Իրաւ, Լուցիոս, Ես չեմ հաւատում, բայց գիտեմ, որ դու այր ես բարեպաշտ, Քո մէջ կայ մի բան, որ կոչւում է խիղճ։ Պապական քսան հնարքներ ու նոյնքան ծէսեր, Դու կատարում ես, ինչպէս տեսել եմ, բազմահոգութեամբ։ Ահա թէ ինչու ստիպում եմ քեզ, որ երդուես, Լուցիոս։ Չէ՞ որ յիմարը իր կուռքն է պաշտում Աստծու փոխարէն, Եւ նա չի դրժում իր երդումն երբեք. Հէնց այդ երդումն եմ քեզնից պահանջում։ Ուրեմն, երդուիր Այդ նոյն Աստծով, ով էլ որ լինի, Ում որ պաշտում ես, ում գահի առաջ դու ծունր ես իջնում։ Փրկիր իմ որդուն, կերակրիր նրան ու դաստիարակիր, Այլապէս ոչինչ դու չես իմանայ։
Quand je ne croirais à aucun dieu, comme en effet je ne crois à aucun, n'importe; je sais que tu es religieux, et que tu as en toi quelque chose qu'on appelle la conscience, et vingt autres superstitions et cérémonies papistes que je t'ai vu très-soigneux d'observer. C'est pour cela que j'exige ton serment. Car je sais qu'un idiot se fait un dieu de son hochet, et tient la parole qu'il a jurée par ce dieu. C'est là le serment que j'exige. Ainsi tu jureras par ce dieu, quel qu'il soit, que tu adores et que tu vénères, de sauver mon enfant, de le nourrir et de l'élever; ou je ne te révèle rien.

LUCIUS.
Երդւում եմ ահա ես այդ նոյն Աստծով, Որ կը կատարեմ քո ցանկութիւնը։
Eh bien, je te jure par mon dieu que je le ferai.

AARON.
Նախ ՝ դու իմացիր, որ իմ երեխան ծնուեց կայսրուհուց։
D'abord, apprends que j'ai eu cet enfant de l'impératrice.

LUCIUS.
Օ՜ խիստ անյագուրդ, անառակ դու կին։
O femme impudique et d'une luxure insatiable!

AARON.
Սա մի գթասիրտ արարք է, Լուցիոս, համեմատաբար Այն յանցանքի հետ, որի մասին դու կ'իմանաս ինձնից։ Նրա տղաների ձեռքով սպանուեց Բասիանոսն անմեղ, Նրանք կտրեցին քո քրոջ լեզուն,

Բռնաբարեցին ու կտրատեցին ձեռքերը նրա, Այլանդակեցին ու զարդարեցին, ինչպէս դու տեսար։
Arrête, Lucius! Ce n'est là qu'une action charitable, en comparaison de ce que tu vas entendre. Ce sont ses deux fils qui ont massacré Bassianus; ils ont coupé la langue à ta soeur, ils lui ont fait violence, lui ont coupé les mains, et l'ont parée comme tu l'as vue.

LUCIUS.
Գարշելի սրիկայ, եւ դու կոչում ես դրանք զարդարա՞նք։
O exécrable scélérat! tu appelles cela parer?

AARON.
Այո՛, կոկեցի՛ն, լուացի՛ն նրան ու զարդարեցի՛ն, եւ նրանց համար դա մի գեղեցիկ զարդախաղ եղաւ։
Eh! elle a été lavée, et taillée et parée, et cela fut même un fort agréable exercice pour ceux qui l'ont fait.

LUCIUS.
Օ՜ Բարբարոսներ, ստոր սրիկանե՛ր, ինչպիսին դու ես։
O! Les brutaux et barbares scélérats, semblables à toi!

AARON.
Այո՛, ես նրանց ուսուցիչն եղայ, Սովորեցրի այդ ձեւով վարուել։ Իրենց մորից են նրանք ժառանգել վաւաշոտ կիրքը, Եւ սա ստոյգ է, ինչպէս խաղաթուղթն երբեմն է տանում խաղագումարը, Արնախմութիւնն ինձնից են առել, սա նոյնպէս ճիշտ է, Ինչպէս որ կռւում շներն են բռնում միմեանց կոկորդից։ Թող արարքներն իմ լինեն վկաներն իմ արժանիքի, Ես եմ դաւադիր փոսի մօտ բերել քո եղբայրներին, Որտեղ սպանուած խեղճ Բասիանոսի դիակն էր ընկած, Եւ ես եմ, Լուցիոս, գրել նամակը, որ հայրդ գտաւ, Ես եմ թաքցրել նամակում յիշուած ոսկով լի պարկը, Դաշնակցում էին ինձ հետ կայսրուհին ու նրա որդիք։ Եղե՞լ է, որ դու սաստիկ վշտանաս, Եւ ես չլինեմ պատճառն այդ վշտի, Ես համոզեցի, որ հայրդ կտրեց իր ձեռքը ազնիւ, Երբ ձեռքն ստացայ, մի կողմ քաշուեցի, Քիչ մնաց սիրտս պայթէր ծիծաղից։ Այո՛, ես տեսայ պատի ետեւից, թէ հայրդ ինչպէս Իր ձեռքի դիմաց երկու տղաների գլուխներն ստացաւ, Ինչպէս լաց եղաւ, ես ծիծաղեցի այնպէս լիաթոք, Որ իմ աչքերից նրա աչքի պէս արցունք յորդեցին, Եւ երբ պատմեցի այդ ծաղրի մասին իմ Տամօրային, Քիչ մնաց, որ նա ուրախութիւնից ուշաթափ լինէր, Այդ լուրի համար նա ինձ պարգեւեց երեսուն համբոյր։
C'est moi qui ai été leur maître, et qui les ai instruits. C'est de leur mère qu'ils tiennent cet esprit de débauche, ce qui est aussi sûr que l'est la carte qui gagne la partie; quant à leurs goûts sanguinaires, je crois qu'ils les tiennent de moi, qui suis un aussi brave chien qu'aucun boule-dogue qui ait jamais attaqué le taureau à la tête. Que mes actions perfides attestent ce que je veux; j'ai indiqué à tes frères cette fosse où le corps de Bassianus était gisant; j'ai écrit la lettre que ton père a trouvée, et j'avais caché l'or dont il était parlé dans cette lettre, d'accord avec la reine et ses deux fils. Et que s'est-il fait dont tu aies eu à gémir, où je n'aie pas mis ma part de malice? J'ai trompé ton père pour le priver de sa main; et dès que je l'ai eue, je me suis retiré à l'écart, et j'ai failli me rompre les côtes à force de rire. Je l'ai épié à travers la crevasse d'une muraille, après qu'en échange de sa main il a reçu les têtes de ses deux fils, j'ai vu ses larmes, et j'ai ri de si bon coeur que mes deux yeux pleuraient comme les siens; et quand j'ai raconté toute cette farce à l'impératrice, elle s'est presque évanouie de plaisir à mon récit, et elle m'a payé mes nouvelles par vingt baisers.

LUCIUS.
Եւ այս բոլորը կարող ես պատմել եւ չկարմրե՞լ։
Comment peux-tu dire tout cela sans rougir?

AARON.
Այո՛, առածի այն սեւ շան նման։
Je rougis comme un chien noir, comme dit le proverbe.

LUCIUS.
Եւ դու չե՞ս տանջւում այս զարհուրելի ոճիրների համար։
N'as-tu point de remords de ces forfaits atroces?

AARON.
Այո՛, տանջւում եմ, որ հազար անգամ շատ չեմ կատարել նման ոճիրներ, Եւ նոյնիսկ ես այն օրն եմ անիծում, Թէեւ այնպիսի օրեր իմ կեանքում շատ քիչ են եղել, Երբ սարսափելի ոճրագործութիւն ես չեմ կատարել, Մարդ չեմ սպանել կամ չեմ մտածել սպանութեան մասին, Չեմ բռնաբարել դեռատի մի կոյս, Չեմ մեղադրել անմեղ մի մարդու, չեմ դրժել խօսքս Եւ թշնամութիւն ես չեմ սերմանել երկու սիրելի ընկերոջ միջեւ, Չեմ տարել աղքատ գիւղացու ուլը, Չեմ այրել նրա շտեմարանը կամ խոտի դէզը մութ գիշերներին, Չեմ հրամայել հանգցնել հրդեհն իրենց արցունքով։ Ես մեռելներ եմ գերեզմաններից յաճախ դուրս հանել, Նրանց կանգնեցրել իրենց հարազատ մարդկանց դռան մօտ. Երբ նրանք նոր են իրենց մորմոքող վիշտը մոռացել, Ես նրանց մաշկին, ինչպէս ծառերի կեղեւի վրայ, Փորագրել եմ իմ սուր դանակով. Թող ձեր վշտերը երբեք չմեռնեն, թէկուզ ես մեռնեմ։ Ես հազարաւոր խիստ զարհուրելի ոճիր եմ գործել, Եւ խիղճս հանգիստ է, ինչպէս ուրիշը՝ թէ ճանճ սպանէր, Բայց միայն մի բան իմ սիրտն է տանջում, Որ հազար անգամ չեմ կրկնապատկել իմ ոճիրները։
Oui, de n'en avoir fait mille fois davantage, et même en ce moment je maudis le jour, cependant je crois qu'il en est peu sur lesquels puisse tomber ma malédiction, où je n'aie fait quelque grand mal, comme de massacrer un homme ou de machiner sa mort, de violer une vierge ou d'imaginer le moyen d'y arriver, d'accuser quelque innocent ou de me parjurer moi-même, de semer une haine mortelle entre deux amis, de faire rompre le cou aux bestiaux des pauvres gens, d'incendier les granges et les meules de foin dans la nuit, et de dire aux propriétaires d'éteindre l'incendie avec leurs larmes: souvent j'ai exhumé les morts de leurs tombeaux, et j'ai placé leurs cadavres à la porte de leurs meilleurs amis lorsque leur douleur était presque oubliée, et sur leur peau, comme sur l'écorce d'un arbre, j'ai gravé avec mon couteau en lettres romaines: Que votre douleur ne meure pas quoique je sois mort. En un mot, j'ai fait mille choses horribles avec l'indifférence qu'un autre met à tuer une mouche; et rien ne me fait vraiment de la peine que la pensée de ne plus pouvoir en commettre dix mille autres.

LUCIUS.
Ցած բերէք իսկոյն այդ սատանային, չպէտք է մեռնի Նա թեթեւ մահով, ինչ կախաղանն է պարգեւում մարդուն։
Descendez ce démon: il ne faut pas qu'il meure d'une mort aussi douce que d'être pendu sur-le-champ.

AARON.

Եթէ դեւեր կան, կ'ուզեմ դառնալ դեւ, Որպէսզի ապրեմ, որպէսզի այրուեմ յաւիտենական կրակների մէջ, Միայն թէ քեզ հետ լինեմ դժոխքում Եւ իմ թունաւոր լեզուով քեզ խայթեմ։

S'il existe des démons, je voudrais être un démon pour vivre et brûler dans le feu éternel; pourvu seulement que j'eusse ta compagnie en enfer, et que je pusse te tourmenter de mes paroles amères.

LUCIUS.

Բերանը փակէ՛ք, եւ թող այլեւս ոչ մի բառ չասի։ Մտնում է մի գոթ։

Amis, fermez-lui la bouche et qu'il ne parle plus.

DEUXIÈME GARDE GOTH.

Առաջնորդ, Հռոմից դեսպան է եկել, Եւ նա ուզում է անձամբ ձեզ տեսնել։

Seigneur, voici un messager de Rome qui désire être admis en votre présence.

LUCIUS.

Ասէ՛ք թող ներս գայ։

Qu'il vienne.

*[Émilius enters.]*

LUCIUS [cont.]

Ողջոյն, Էմիլիոս, ի՞նչ լուրեր Հռոմից։

Salut, Émilius; quelles nouvelles apportez-vous de Rome?

ÉMILIUS.

Փառապանծ Լուցիոս եւ ձեզ, գոթերի ազնիւ իշխաններ, ձեզ իմ միջոցով Մեծ Հռոմի կայսրը ողջոյն է յղում։ Նա իմանալով, որ զէնք էք վերցրել, ուզում է ձեզ հետ Ձեր հարազատ հօր տանը բանակցել։ Եթէ պատանդներ դուք պահանջում էք, Կարող ենք նրանց անյապաղ յանձնել։

Seigneur Lucius, et vous, princes des Goths, l'empereur romain vous salue tous par ma voix: ayant appris que vous êtes en armes, il demande une entrevue avec vous à la maison de votre père. Vous pouvez choisir vos otages, ils vous seront remis sur-le-champ.

UN CHEF DES GOTHS.

Իսկ ի՞նչ է ասում մեր առաջնորդը։

Que dit notre général?

LUCIUS.

Էմիլիոս, կայսրը թող պատանդներին Յանձնի իմ հօրը կամ հօրեղբօրս՝ բարի Մարկոսին։ Այդ դէպքում կը գանք։

Émilius, que l'empereur donne ses otages à mon père et à mon oncle Marcus, et nous viendrons.

*[All exit.]*

]{}[

## ACT V. SCENE II.

Rome. Before Titus' house. Tamora, Demetrius and Chiron enter, disguised.

### TAMORA.

Այս տարօրինակ, մռայլ զգեստով Ես կը հանդիպեմ Անդրոնիկոսին եւ կ'ասեմ նրան, Որ ես Վրէժն եմ, ինձ ուղարկել են սանդարամետից, Որպէսզի մաքրենք նրա սոսկալի վիրաւորանքը։ Դէհ, բախէք դուռը նրա սենեակի, Որտեղից, ինչպէս ասում են մարդիկ, նա դուրս չի գալիս Եւ մտածում է վրիժառութեան անլուր հնարքներ։ Ասէք դուք նրան՝ Վրէժն է եկել եւ փափագում է իրեն միանալ, Եւ կործանել իր թշնամիներին։ Նրանք բախում են։ Տիտոսը բացում է սենեակի դուռը։

C'est dans cet étrange et singulier habillement que je veux me présenter à Andronicus, et lui dire que je suis la Vengeance envoyée du fond de l'abîme pour me joindre à lui et venger ses cruels outrages. Frappez la porte de son cabinet, où l'on dit qu'il se renferme pour méditer les étranges plans de terribles représailles. Dites-lui que la Vengeance elle-même est venue pour se liguer avec lui et travailler à la ruine de ses ennemis.

*[They knock and Titus opens his study door.]*

### TITUS.

Ովքե՞ր են այդպէս մտքերս ընդհատում։ Խորամանկութեա՞մբ ուզում էք բանալ սենեակիս դուռը, Որպէսզի թռչեն տխուր մտքերս, Եւ ողջ աշխատանքս ապարդի՞ւն անցի։ Դուք սխալւում էք, քանզի այն ամէնն, ինչ անելու եմ, Նայէք, գրուած է արնոտ տողերով Եւ ինչ գրուած է՝ այն կը կատարուի։

Pourquoi troublez-vous mes méditations? Vous faites-vous un jeu de me faire ouvrir la porte, dans le but de faire évanouir mes tristes résolutions et de rendre sans effet toutes mes études? Vous vous trompez; car ce que j'ai intention de faire, voyez, je l'ai tracé ici en caractères de sang; et ce qui est écrit s'accomplira.

### TAMORA.

Տիտոս, եկել եմ քեզ հետ խօսելու։

Titus, je suis venue pour te parler.

### TITUS.

Օ՜ ո՛չ, ոչ մի բառ։ Ինչպէ՞ս կարող եմ իմաստաւորել Խօսքս շարժումով, երբ ես ձեռք չունեմ, Դու իմ նկատմամբ ունես բացայայտ առաւելութիւն, Ուրեմն պէտք չէ այլեւս խօսել։

Non, pas un seul mot. Comment puis-je donner de la grâce à mon discours, lorsqu'il me manque une main pour y joindre les gestes? Tu as l'avantage sur moi; ainsi retire-toi.

### TAMORA.

Եթէ դու, Տիտոս, ինձ ճանաչէիր, Շատ կ'ուզենայիր ինձ հետ զրուցել։

Si tu me connaissais, tu voudrais me parler.

TITUS.

Ես խելագար չեմ եւ բաւական լաւ ճանաչում եմ քեզ, Ապացոյց՝ ահա այս մարմինը խեղճ, Ապացոյց՝ ահա այս բեկորները ու տողերն արնոտ, Ապացոյց՝ ահա այս խորշոմները մտահոգութեան ու տառապանքի, Ապացոյց՝ ահա գիշերը դժնի եւ օրը տանջող, Ապացոյց՝ ահա վշտերս բոլոր, Քանզի ես քո մէջ Տեսնում եմ հպարտ մեր կայսրուհուն, Միթէ՞ չես եկել, որ միւս ձեռքս էլ տանես, Տամորա։

Je ne suis pas fou: je te connais bien; j'atteste ce bras mutilé, et ces lignes sanglantes, et ces rides profondes, creusées par le chagrin et les soucis: j'atteste les jours de fatigue et les longues nuits; j'atteste tout mon désespoir que je te connais bien pour notre fière impératrice, la puissante Tamora: ne viens-tu pas me demander mon autre main?

TAMORA.

Գիտցիր, տխուր մարդ, ես Տամորան չեմ, Ես բարեկամդ եմ, իսկ նա՝ Տամորան, թշնամին է քո, Գիտցիր, Վրէժն եմ, ինձ ուղարկել են սանդարամետից, Որպէսզի մտքիդ անգղը կրծող Յագենայ լրիւ թշնամիներիդ վրէժխնդրութեամբ, Իջիր, ողջունիր իմ յայտնութիւնը այս լոյս աշխարհում, Զրուցիր ինձ հետ մարդասպանութեան կամ մահի մասին։ Չկայ այնպիսի մի խորունկ քարայր կամ գաղտնի անկիւն, Չկայ այնպիսի մի կոյր մթութիւն կամ միգոտ հովիտ, Որտեղ արիւնոտ սպանութիւնը կամ թէ սոսկալի բռնաբարութիւնն Ինձ կարողանան խիստ ահաբեկել, ինձնից թաքնուել։ Ես կը շշնջամ նրանց ականջին իմ անունն ահեղ՝ Վրէժխնդրութիւն, Եւ նա կը ստիպի չարագործներին սարսափից դողալ։

Sache, triste vieillard, que je ne suis point Tamora: elle est ton ennemie, et moi je suis ton amie. Je suis la Vengeance, envoyée du royaume des enfers pour te soulager du vautour qui te ronge le coeur, en exerçant d'horribles représailles sur tes ennemis. Descends et souhaite-moi la bienvenue dans ce royaume de la lumière: viens t'entretenir avec moi de meurtre et de mort. Il n'est point d'antre sombre, de retraite cachée, de vaste obscurité, de vallon obscur où le meurtre sanglant et l'affreux viol puissent se tapir de frayeur, où je ne puisse les découvrir, et faire retentir à leurs oreilles mon nom terrible, la Vengeance, nom qui fait frissonner les odieux coupables.

TITUS.

Վրէժը դո՞ւ ես, ուղարկել են քեզ, Որպէսզի տանջես թշնամիների՞ս։

Es-tu la Vengeance? m'es-tu envoyée pour tourmenter mes ennemis.

TAMORA.

Այո՛, Վրէժն եմ, ուրեմն ցած իջի՛ր եւ ինձ ողջունիր։

Oui; ainsi descends et reçois-moi.

TITUS.

Բայց գալուց առաջ ինչ-որ մի բանով ծառայիր դու ինձ։ Կանգնած են կողքիդ Բռնաբարութիւնն ու Սպանութիւնը. Ցոյց տուր ինձ գործով, որ դու Վրէժն ես, Դաշունիր նրանց կամ բզկտիր քո մարտակառքի տակ, Այնժամ ես կ'իջնեմ, կը դառնամ կառքիդ կառապանն ազնիւ եւ աշխարհի շուրջ քեզ հետ կը շրջեմ։ Գտիր դու երկու ընտիր նժոյգներ՝ սեւ, ինչպէս սեւ սաթ, Որպէսզի քաշեն քո վրիժառու կառքն արագընթաց, Եւ գտիր իրենց ոճրագործ որջում մարդասպաններին, Ու երբ քո կառքը դու բեռնաւորես նրանց գլուխներով, Ես կ'իջնեմ քեզ մօտ ու քո կառքի հետ Կը վազեմ, ինչպէս մի յետին ստրուկ, բովանդակ օրը՝ Արեւածագից, երբ երկրի վրայ Հէլիոսն է ելնում, Մինչեւ մայրամուտ, երբ նա սուզւում է ծովի ջրերում։ Ես կը

կատարեմ այս ծանր գործը օր օրի վրայ, Մինչեւ կործանես Բռնաբարութիւնն ու Սպանութիւնը։
Commence par me rendre quelque service avant que j'aille te recevoir. A tes côtés sont le Meurtre et le Viol: donne-moi quelque assurance que tu es en effet la Vengeance: poignarde-les ou écrase-les sous les roues de ton char; alors j'irai te trouver, et je serai ton cocher, et je roulerai avec toi autour des globes. Procure-toi deux coursiers fougueux, noirs comme le jais, pour entraîner rapidement ton char vengeur, et déterrer les meurtriers dans leurs coupables repaires. Et lorsque ton char sera chargé de leurs têtes, je descendrai et je courrai à pied près de la roue tout le long du jour, comme un vil esclave; oui, depuis le lever d'Hypérion à l'orient jusqu'à ce qu'il se précipite dans l'Océan: et tous les jours je recommencerai cette pénible tâche, à condition que tu détruiras ici le Rapt et le Meurtre.

## TAMORA.
Իմացիր, նրանք իմ ծառաներն են, եկել են ինձ հետ։
Ce sont mes ministres, et ils m'accompagnent.

## TITUS.
Քո ծառանե՞րն են, ինչպէ՞ս են կոչւում։
Sont-ils tes ministres? Comment s'appellent-ils?

## TAMORA.
Բռնաբարութիւն եւ Սպանութիւն։ Այսպէս են կոչւում, Քանի որ նրանք պատժում են նրանց, Ովքեր այսպիսի յանցանք են գործում։
Le Rapt et le Meurtre: ils portent ces noms parce qu'ils punissent ceux qui sont coupables de ces crimes.

## TITUS.
Աստուա՜ծ իմ, ինչքա՜ն նման են նրանք կայսրուհու որդոց, Իսկ դու՝ կայսրուհուն։ Բայց մենք երկրաւոր, խելագար մարդ ենք, եւ մեր աչքերն են յաճախ սխալւում, Օ՜ քաղցր Վրէժ, գալիս եմ քեզ մօտ։ Եթէ մէկ ձեռքի ողջագուրանքով դու կը գոհանաս, Ես կը գամ քեզ մօտ, կ'ողջագուրուեմ։ Իջնում է։
Grand Dieu! comme ils ressemblent aux fils de l'impératrice! Mais nous autres, pauvres humains, nous avons de pauvres yeux insensés qui nous trompent. O douce Vengeance, maintenant je viens à toi; et si l'étreinte d'un seul bras peut te satisfaire, je vais te presser tout à l'heure avec celui qui me reste.

*[As Titus exits the door to enter downstage Tamora whispers to her sons.]*

## TAMORA.
Խիստ պատշաճում է նրա խենթութեանն այս որոշումը։ Ինչով էլ նրա խելագար միտքը ես սնուցանեմ, Դարձեալ դուք պէտք է ձեր նուրբ խօսքերով ինձ նեցուկ կանգնէք, Քանզի լրջօրէն նա հաւատում է, որ ես Վրէժն եմ։ Ես, ներշնչելով ցնդած ծերունուն այդ յիմար միտքը, Կը ստիպեմ նրան, որ մարդ ուղարկի որդու ետեւից, Եւ ես, պահելով նրան խնջոյքում, Մի ակնթարթում կը գտնեմ ինչ-որ խորամանկ միջոց, Որպէսզի ցրեմ խիստ փոփոխամիտ զօրքը գոթերի Կամ գուցէ նրանց դարձնեմ թշնամի այդ խենթ ծերուկին։ Բայց նա գալիս է։ Ես պէտք է նորից իմ դերը խաղամ։
Ce pacte que je fais avec lui convient à sa folie: quelque invention que je forge pour nourrir la chimère de son cerveau malade, songez à l'appuyer, à l'entretenir par vos discours; car il ne lui reste plus aucun doute, et il me prend fermement

pour la Vengeance. Profitant de sa crédulité et de sa folle idée, je le déterminerai à mander son fils Lucius; et lorsque je serai assurée de lui dans un banquet, je trouverai quelque ruse, quelque coup de main, pour écarter et disperser ces Goths inconstants, ou au moins pour en faire ses ennemis. Voyez: le voilà qui vient; il faut que je joue mon rôle.

*[Titus enters.]*

## TITUS.

Ձեր մեղքով այստեղ՝ մենութեան գրկում, երկար ապրեցի, Բարով էք եկել իմ տխուր տունը, ահե՛ղ Ֆուրիա, Բարով էք եկել, Բռնաբարութիւն եւ Սպանութիւն, Որքա՜ն նման էք դուք մեր կայսրուհուն ու նրա որդոց, Ձեզ պակասում է սեւ մաւրը միայն, Միթէ՞ դժոխքը չէր կարող ձեզ տալ այսպիսի մի դեւ։ Չէ՞ որ կայսրուհին, ինչքան ես գիտեմ, Չէր կարող գնալ որեւէ մի տեղ առանց այդ մաւրի։ Եթէ կ'ուզէիք, որ մեր կայսրուհին ճիշտ ներկայացուէր, Ձեզ անհրաժեշտ էր այսպիսի մի դեւ, Բայց ով էլ լինէք, բարով էք եկել, ի՞նչ պիտի անենք։

J'ai longtemps été délaissé, et cela pour toi; sois la bienvenue, furie terrible, dans ma maison désolée! Meurtre et Rapt, vous êtes aussi les bienvenus. Comme vous ressemblez à l'impératrice et à ses deux fils! Je vous trouve bien assortis, il ne vous manque qu'un More. Est-ce que tout l'enfer n'a pu vous procurer un pareil démon? car je sais bien que jamais l'impératrice ne roule dans son char qu'elle ne soit accompagnée d'un More; et pour représenter en vrai notre reine, il conviendrait que vous eussiez un pareil démon. Mais soyez les bienvenus, tels que vous êtes; que ferons-nous?

## TAMORA.

Ի՞նչ կ'ուզենայիք, որ մենք անէինք, Տէր Անդրոնիկոս։

Que voudrais-tu que nous fissions, Andronicus?

## DEMETRIUS.

Ցոյց տուր ինձ, Տիտոս, մարդասպանին, Կը պատժեմ նրան։

Montre-moi un meurtrier, et je me charge de lui.

## CHIRON.

Ցոյց տուր ինձ, Տիտոս, բռնաբարողին, Եւ քո վրէժը կ'առնեմ նրանից։

Montre-moi un scélérat qui ait commis un rapt; je suis envoyé pour en tirer vengeance.

## TAMORA.

Ցոյց տուր այն հազար սրիկաներին՝ քեզ վիրաւորող, Եւ ես բոլորից քո վրէժը կ'առնեմ։

Montre-moi mille méchants qui t'aient fait du mal, et je te vengerai d'eux tous.

## TITUS.

Փնտրիր դու նրանց Հռոմի վտանգաւոր մայթերի վրայ Եւ երբ դու գտնես քեզ նման մի մարդ, Բարի՛ Սպանութիւն, սպանի՛ր նրան, նա մարդասպան է։ Գնա նրա հետ, երբ դու էլ տեսնես քեզ նման մէկին, Բռնաբարութի՛ւն, բռնաբարի՛ր նրան, բռնաբարողն է։ Գնա նրանց հետ, կայսրի պալատում Կայ մի թագուհի, նրան սեւաթոյր մաւրն է ուղեկցում. Դու շատ հեշտութեամբ կարող ես նրան քեզնով ճանաչել, Նա ոտից գլուխ քո ճիշտ պատկերն է։ Աղաչու՛մ եմ քեզ, պատժի՛ր դու նրանց տանջալի մահով, Քանզի

տանջեցին նրանք ծերունուս եւ որդիներիս։
Regarde autour de toi dans les rues corrompues de Rome, et quand tu apercevras un homme qui te ressemble, bon Meurtre, poignarde-le; c'est un meurtrier. Toi, accompagne-le, et quand le hasard te fera rencontrer un autre homme qui te ressemble, bon Rapt, poignarde-le; c'est un ravisseur. Toi, suis-les; il y a dans le palais de l'empereur une reine suivie d'un More; tu pourras aisément la reconnaître en la comparant à toi, car elle te ressemble de la tête aux pieds: je t'en conjure, fais-leur souffrir quelque mort violente; ils ont été violents envers moi et les miens.

TAMORA.
Դու հրաշալի դաս տուեցիր մեզ, եւ մենք այդ դասը լաւ կը սովորենք, Բայց բարի եղիր, դո՛ւ, Անդրոնիկոս, Մի մարդ ուղարկիր երիցս խիզախ որդուդ ետեւից, Որ քաջ գոթերին առաջնորդում է դէպի մեծ Հռոմ, Եւ խնդրիր նրան, որ նա մասնակցի քո տան խնջոյքին, Ու երբ նա կը գայ, կը բերեմ այստեղ մեր կայսրուհուն որդիների հետ, Կը բերեմ կայսրին, կը բերեմ բոլոր թշնամիներիդ, Նրանք ծնրադիր կ'աղերսեն քեզնից գթասրտութիւն, Եւ կը մեղմանայ քո խիստ բարկացած սիրտը նրանցով. Ի՞նչ կ'ասես սրան, բարեգութ Տիտոս։
Nous voilà bien instruits; nous l'exécuterons: mais si tu voulais, bon Andronicus, envoyer vers Lucius, ton vaillant fils, qui conduit vers Rome une armée de valeureux Goths; et l'inviter à se rendre à un festin dans ta maison; lorsqu'il sera ici, au milieu de ta fête solennelle, j'amènerai l'impératrice et ses fils, l'empereur même et tous tes ennemis, et ils s'agenouilleront et se mettront à ta merci; et tu pourras soulager sur eux ton coeur irrité. Que répond Andronicus à cette proposition?

TITUS.
Մարկոս, եղբայր իմ, այժմ քեզ է կանչում դժբախտ Տիտոսը։
Marcus, mon frère! C'est le triste Titus qui t'appelle.

*[Marcus enters.]*

TITUS [cont.]
Իմ ազնիւ Մարկոս, որդուս՝ Լուցիոսի ետեւից գնա, Կը գտնես նրան քաջ գոթերի մօտ, Խնդրիր դու նրան՝ թող վերադառնայ՝ հետը բերելով Գոթերի խիզախ պայազատներից մի քանի հոգու. Խնդրիր դու նրան, որ զօրքը թողնի որոշուած տեղում, Եւ ասա՝ կայսրը եւ կայսրուհին քէֆի են նստել իմ տանը ինձ հետ, Թող նա շտապի։ Այս ամէնն արա յանուն իմ սիրոյ, Թող իմ խնդրանքը որդիս կատարի, Եթէ հօր կեանքը թանկ է իր համար։
Pars, cher Marcus, va trouver ton neveu Lucius; tu le chercheras parmi des Goths. Dis-lui de venir me trouver, et d'amener avec lui quelques-uns des principaux princes des Goths; dis-lui de faire camper ses soldats là où ils sont; dis-lui que l'empereur et l'impératrice viennent à une fête chez moi, et qu'il la partagera avec eux. Fais cela pour l'amitié que tu me portes, et qu'il fasse ce que je dis s'il tient à la vie de son vieux père.

MARCUS.
Ամէն ինչ կ'անեմ, շատ չանցած՝ ես տուն կը վերադառնամ։
Je vais faire ton message, et revenir aussitôt.

[Marcus exits.]

TAMORA.

Այժմ գնում եմ, որպէսզի ես քո գործով զբաղուեմ՝ Տանելով ինձ հետ իմ ծառաներին։

Je vais te quitter pour m'occuper de tes affaires, et j'emmène avec moi mes ministres.

TITUS.

Ո՛չ: Ո՛չ: Ինձ մօտ մնացէք, Բռնաբարութիւն եւ Սպանութիւն, Թէ ոչ՝ իմ եղբօրն ես ետ կը կանչեմ Եւ ես կը թողնեմ, որ իմ վրէժը Լուցիոսը մաքրի։

Non, non, que le Meurtre et le Rapt restent avec moi; autrement je rappelle mon frère, et je ne cherche plus d'autre vengeance que par les mains de Lucius.

TAMORA.

Ի՞նչ կ'ասէք, տղանե՛ր, դուք համաձա՞յն էք նրա մօտ մնալ, Մինչեւ որ գնամ իմ կայսրին պատմեմ, Թէ իր կայսրուհին կատակի տալով ինչպէս թաքցրեց դաւադրութիւնը։ Դուք համբերութեամբ տարէք ծերունու քմահաճոյքը, Նրա հետ խօսէք շողոքորթելով, մինչեւ որ նորից ես վերադառնամ։

Qu'en dites-vous, mes enfants? Voulez-vous rester, tandis que je vais informer l'empereur de la manière dont j'ai conduit le stratagème que nous avons résolu? Cédez à sa fantaisie, flattez-le, caressez-le, et demeurez avec lui jusqu'à mon retour.

DEMETRIUS.

Առանձին՝ Տամորային։ Գնա քո գործին եւ թող մեզ այստեղ։

Madame, partez quand il vous plaira, laissez-nous ici.

TAMORA.

Մնա՛ս բարով, Տիտոս, Վրէժը գնում է, որպէսզի թակարդ գցի քո բոլոր թշնամիներին։

Adieu, Andronicus; la Vengeance va ourdir un plan pour surprendre tes ennemis.

TITUS.

Ես չեմ կասկածում, դրա համար էլ, քաղցրալիր Վրէժ, գնաս դու բարով։

Je le sais que tu vas t'en occuper; adieu, chère Vengeance.

[Tamora exits.]

CHIRON.

Ծերո՛ւկ, մեզ ասա, ի՞նչ պիտի անենք։

Dis-nous, vieillard, à quoi tu nous emploieras.

TITUS.

Ինձ մօտ ձեզ համար բաւական գործ կայ։ Պուբլիոս, եկ այստեղ։ [Shouts.] Պուբլիուս, արի այստեղ:

Ne vous mettez pas en peine; j'ai assez d'ouvrage pour vous. [Shouts.] Publius, viens ici!

*[ Publius enters.]*

PUBLIUS.
Ի՞նչ էք կամենում։
Que désirez-vous?

TITUS.
Ովքե՞ր են սրանք։
Connais-tu ces deux hommes?

PUBLIUS.
Կարծեմ Քիրոնն ու Դեմետրիոսն են, կայսրուհու որդիք։
Ce sont les fils de l'impératrice, je crois, Chiron et Démétrius.

TITUS.
Վա՜յ Պուբլիոս, վա՜յ։ Դու սխալւում ես։ Նրանցից մէկը Սպանութիւնն է, Միւսի անունն է՝ Բռնաբարութիւն, Դրա համար էլ շղթայիր նրանց, ազնիւ Պուբլիոս։ Քայոս, Վալենտին, կապէ՜ք ձեռքերը, Դուք յաճախ էիք ինձանից լսել, թէ ինչպէս էի այդ պահին երազում, Եւ ես ապրեցի մինչեւ այդ պահը, շղթայէք նրանց, Փակէք բերաններն, եթէ սկսեն նրանք բղաւել։ Գնում է։ Պուբլիոսը եւ միւսները յարձակւում են Դեմետրիոսի ու Քիրոնի վրայ։
Fi donc, Publius, fi donc, tu te trompes étrangement. L'un est le Meurtre, et l'autre s'appelle le Rapt; en conséquence, enchaîne-les, bon Publius. Caïus, Valentin, mettez la main sur eux. Vous m'avez souvent entendu désirer cet instant, je le trouve enfin. Liez-les bien, et fermez-leur la bouche s'ils veulent crier.

*[ Caïus and Valentin enter.]*

CHIRON.
Սպասէ՜ք, սրիկանե՜ր։ Այստեղ կանգնած են կայսրուհու որդիք։
Lâches, arrêtez; nous sommes les fils de l'impératrice!

PUBLIUS.
Դրա համար էլ կարգադրուած է ձեզ ձերբակալել։ Փակէք դուք նրանց բերաններն իսկոյն, Որպէսզի նրանք չասեն ոչ մի բառ։ Իսկ շղթաները ամո՞ւր են կապուած։ Վերադառնում են Տիտոս Անդրոնիկոսը՝ ձեռքին մի դանակ, եւ Լաւինիան՝ կոնքով։
Et c'est pour cela que nous faisons ce qu'on nous a commandés. Fermez-leur la bouche; qu'ils ne puissent pas dire un mot. Est-il bien garrotté? Songez à les bien lier.

TITUS.
Մօտ եկ, Լաւինիա, նայիր շղթայուած թշնամիներիդ։ Տղաներ, փակէք նրանց բերանը, թող նրանք լռեն, Բայց թող իմ ահեղ բառերը լսեն։ Օ՜ սրիկաներ Քիրոն ու Դեմետրիոս, Այս վճիտ աղբիւրն աղտոտել էք դուք

ձեր կեղտոտ տիղմով, Այս գեղեցկափայլ ամռանն էք խառնել ձեր ձմեռը ցուրտ, Դուք սպանել էք նրա ամուսնուն, Եւ այդ նողկալի յանցանքի համար Նրա եղբայրներին մատնել էք մահուան, Իմ ձեռքն էք կտրել, որ զուարճանաք, Կտրել էք նրա անուշ ձեռքերը, կտրել էք լեզուն Եւ այն, որ լեզուից ու ձեռքից թանկ է՝ կուսութիւնն անբիծ, Անմարդկայնօրէն խլել էք նրանից։ Ի՞նչ պիտի ասէիք, եթէ թոյլ տայի, որ դուք խօսէիք, Գուցէ ամօթից դուք չխնդրէիք գթասրտութիւն։ Լսէ՛ք, դահիճներ, թէ ես ինչպէս եմ ձեզ չարչարելու։ Իմ այս մէկ ձեռքով, որ բաշխել էք ինձ, Ես պիտի կտրեմ ձեր կոկորդները, Իսկ իմ Լաւինիան կտրած ձեռքերով կոնքը կը բռնի, Որ ձեր ոճրագործ արիւնն հաւաքի։ Գիտցէք, ձեր մայրը իմ տանը ինձ հետ քէֆ է սարքելու, Իրեն կոչում է Վրէժխնդրութիւն, իսկ ինձ՝ խելագար։ Լսէ՛ք, սրիկանե՛ր, ես պիտի աղամ ձեր ոսկորները՝ դարձնելով փոշի, Եւ շաղախելով ձեր պիղծ արեան հետ՝ նրանցից պիտի ես խմոր հունցեմ Եւ այդ խմորից ես պիտի եփեմ երկու կարկանդակ եւ երկու դագաղ Ձեր ամօթալի գլուխների համար Եւ կը պահանջեմ, որ այդ պոռնիկը՝ ձեր մայրը անսուրբ, Խժռի հողի պէս իր իսկ պտուղը։ Ահա խնջոյքը, որին կանչել եմ ձեր մօրն անզգամ, Ահա այն ճաշը, որ կը յագեցնի նրա ստամոքսը։ Օ՜ դուք աւելի դաժան վարուեցիք իմ դստեր հանդէպ, Քան թէ վարուել են Փիլոմելի հետ, Եւ ես աւելի վրիժառու եմ, քան թէ Պրոգնեն։ Այժմ մօտ բերէք ձեր կոկորդները։ Մօտ եկ, Լաւինիա։

Viens, viens, Lavinia. Vois, tes ennemis sont liés. Amis, fermez bien leurs bouches; qu'ils ne me parlent pas, mais qu'ils entendent les paroles terribles que je profère. O scélérats, Chiron et Démétrius! voici la source pure que vous avez souillée de boue, voilà ce beau printemps que vous avez mêlé avec votre hiver. Vous avez tué son époux, et pour ce lâche forfait deux de ses frères ont été condamnés au supplice; ma main a été tranchée, et vous en avez fait de gaies plaisanteries; ses deux belles mains, sa langue, et ce qui était plus précieux encore que sa langue et ses mains, sa chasteté sans tache, traîtres inhumains, vous les avez mutilées et ravies! Que répondriez-vous si je vous laissais parler? Écoutez, misérables, comment je me propose de vous martyriser. Il me reste encore cette main pour vous couper la gorge; tandis que Lavinia tiendra entre ses moignons le bassin qui va recevoir votre sang criminel. Vous savez que votre mère compte revenir partager mon festin, qu'elle se donne le nom de la Vengeance, et qu'elle me croit fou. Écoutez, scélérats, je mettrai vos os en poussière, j'en formerai une pâte avec votre sang, et de la pâte je ferai un pâté où je ferai entrer vos têtes odieuses; et je dirai à cette prostituée, votre exécrable mère, de dévorer, comme la terre, sa propre progéniture. Voilà le repas auquel je l'ai conviée, et voilà le mets dont elle se gorgera. Vous avez traité ma fille plus cruellement que ne le fut Philomèle; je veux m'en venger plus cruellement que Progné. Allons, tendez la gorge.

*[He cuts their throats.]*

TITUS [cont.]

Արիւնն հաւաքիր։ Երբ նրանք իրենց շունչը կը փչեն, Ես կ'աղամ նրանց ոսկորները պիղծ, Կը խառնեմ փոշին այս խիստ ատելի, կեղտոտ հեղուկին, Թող խմորի մէջ նրանց անարգուած գլուխներն եփուեն։ Եկէք, ինձ օգնէ՛ք, որպէսզի խնջոյքն ավելի արնոտ ու դաժան լինի, Քան թէ խելայեղ կենտաւրոսների խնջոյքն ահարկու։ Քարշ տուէք նրանց, ես խոհարարի դեր եմ խաղալու, Որպէսզի նրանց նախապատրաստեմ՝ դիմաւորելու իրենց մօրն այստեղ։ Գնում են՝ քարշ տալով դիակները։

Viens, Lavinia, reçois leur sang; et, quand ils seront morts, je vais réduire leurs os en poudre imperceptible, les humecter de cette odieuse liqueur, et faire cuire leurs têtes dans cette horrible pâte. Viens, que chacun m'aide à préparer ce banquet; je désire qu'il puisse être plus terrible et plus sanglant que la fête des centaures. Allons, apportez-les ici; je veux être le cuisinier, et les tenir prêts pour le retour de leur mère.

*[Dragging the corpses, all exit.]*

]|[

## ACT V. SCENE III.

The courtyard of Titus' house. Lucius, Marcus and the Goths all enter, with Aaron still prisoner, and his Son in the arms of an attendant.]

### LUCIUS.

Հօրեղբայր Մարկոս, ես անչափ գոհ եմ, Որ հայրս ուզում էր ինձ նորից տեսնել այստեղ՝ Հռոմում։

Mon oncle Marcus, puisque c'est la volonté de mon père que je vienne à Rome, je suis satisfait.

### UN GOTH.

Մենք նոյնպէս գոհ ենք ճակատագրի այս հանդիպումից։

Et notre volonté est la tienne, arrive ce que voudra la Fortune.

### LUCIUS.

Բարի հօրեղբայր, ձերբակալիր այս բարբարոս մաւրին, Այս անյագ վագրին, նզովեալ դեւին, Դու նրան չտաս ոչ մի կերակուր, Քանի դեռ նա չի կանգնել դէմ առ դէմ կայսրուհու առաջ, Որպէսզի նրա չար յանցանքները լրիւ մերկացուեն։ Թող լաւ թաքնուեն մեր հաւատարիմ բարեկամները, Ես վախենում եմ, որ կայսրը մեր դէմ դաւեր է նիւթում։

Cher oncle, chargez-vous de ce More barbare, de ce tigre affamé, de ce maudit démon: qu'il ne reçoive aucune nourriture; enchaînez-le jusqu'à ce qu'on le produise face à face avec l'impératrice, pour rendre témoignage de ses horribles forfaits, et veillez à ce que nos amis en embuscade soient en force; je crains que l'empereur ne nous veuille pas de bien.

### AARON.

Թող մի սատանայ ականջներիս մէջ նզովք շշնջայ, Որ կարողանամ թափել իմ սրտում այսքան կուտակուած չարութեան թոյնը։

Que quelque démon murmure ses malédictions à mon oreille, et m'inspire afin que ma langue puisse exhaler tout le venin dont mon coeur est gonflé.

### LUCIUS.

Կորի՛ր, կեղտոտ շուն, զզուելի ստրուկ։ Տղաներ, օգնէք մեր հօրեղբօրը, որ տանի նրան։

Va-t'en, chien barbare, esclave infâme. Amis, aidez à mon oncle à l'emmener.

[The Goths exit with Aaron. Royal fanfares.]

### LUCIUS [cont.]

Այս շեփորները հայտարարում են կայսեր մոտենալու մասին:

Ces trompettes annoncent l'approche de l'empereur.

*[Saturninus, Tamora and Émilius enter.]*

SATURNINUS.
Ի՞նչ եմ ես տեսնում, միթէ՞ երկնքում կայ ուրիշ արեւ։
Quoi, le firmament a-t-il donc plus d'un soleil?

LUCIUS.
Ի՞նչ շահ, որ ինքդ ես քեզ արեւ կոչում։
Que te sert-il de t'appeler un soleil?

MARCUS.
Հռոմի մեծ կայսր եւ դու, Լուցիոս, թողէ՛ք ձեր վէճը, Որը կարոտ է հանգիստ քննարկման։ Սուրբ նպատակով խնջոյք է սարքել Տիտոսն հոգատար, Թող խաղաղութիւն, միաբանութիւն, սէր ու բարութիւն լինի Հռոմում, Ուրեմն, խնդրում եմ, մօտ եկէք ու ձեր տեղը գրաւէք։
Empereur de Rome, et vous, mon neveu, entamez le pourparler. Cette querelle doit être discutée paisiblement. Tout est prêt pour le festin que le soigneux Titus a ordonné dans des vues honorables, pour la paix, pour l'amitié, pour l'union, et pour le bien de Rome. Veuillez donc avancer, et prendre vos places.

SATURNINUS.
Հաճոյքով, Մարկոս։
Volontiers, Marcus.

*[Titus, dressed like a cook, enters, placing dishes on the table; Lavinia, with a veil over her face, and Young Lucius follow.]*

TITUS.
Ողջո՛յն ձեզ, տէր իմ, ողջո՛յն նաեւ ձեզ, ահեղ թագուհի, Ողջո՛յն ձեզ, գոթեր, ողջո՛յն քեզ, Լուցիոս, Ողջո՛յն բոլորիդ։ Թէեւ հարուստ չէ մեր այս սեղանը, Բայց կը յագենան ստամոքսներդ, խնդրեմ, ճաշակէ՛ք։
Soyez le bienvenu, mon gracieux souverain. Soyez la bienvenue, redoutable reine. Salut, Goths belliqueux. Salut, Lucius; soyez tous les bienvenus. Quoique la chère soit peu splendide, elle suffira pour vous remplir l'estomac: veuillez bien manger.

SATURNINUS.
Ինչո՞ւ ես այսպէս հագնուել, Տիտոս։
Pourquoi êtes-vous ainsi accoutré, Andronicus?

TITUS.
Ես հետեւել եմ, որպէսզի իմ տանն, ինչպէս որ հարկն է, Հիւրասիրեն ձեզ ու ձեր կայսրուհուն։
Parce que je voulais m'assurer que tout serait en ordre pour fêter Votre Majesté et votre impératrice.

TAMORA.
Մենք նկատում ենք այդ բանը, Տիտոս։
Nous vous sommes obligés, bon Andronicus.

TITUS.
Կը նկատէի՛ք, թէ թափանցէիք սիրտը ծերունուս։ Բայց ասա, տէր իմ, արդեօք, լա՞ւ արեց Վիրգինիոսը, Երբ իր սեփական ձեռքով սպանեց հարազատ աղջկան այն բանի համար, Որ խլել էին նրա պատիւը եւ կուսութիւնը։
Vous le seriez sûrement si Votre Majesté pouvait lire au fond de mon coeur. Seigneur empereur, résolvez-moi cette question: Le fougueux Virginius fit-il bien de tuer sa fille de sa propre main, parce qu'elle avait été violée, souillée et déshonorée?

SATURNINUS.
Այո, ի հարկէ, լաւ արեց, Տիտոս։
Il fit bien, Andronicus.

TITUS.
Իսկ ինչո՞ւ, տէր իմ։
Votre raison, mon souverain?

SATURNINUS.
Որպէսզի չապրէր նրա աղջիկը՝ խայտառակութեան կնիքը դէմքին, եւ իր հայեացքով շարունակաբար չտանջէր հօրը։
Parce que sa fille ne devait pas survivre à son déshonneur, et renouveler sans cesse par sa présence les douleurs de son père.

TITUS.
Այո՛, պատճառը ծանրակշիռ է, խիստ արդարացի եւ նոյնքան զօրեղ, Եւ նա կենդանի օրինակ է ինձ՝ դժբախտ ծերունուս, Ուրեմն, Տիտոս, վարուիր ճիշտ այնպէս, Մեռի՛ր, Լաւինիա, թող քեզ հետ մեռնի քո ամօթանքը։ Սպանում է Լաւինիային։ Ամօթանքիդ հետ թող մեռնեն քո հօր վշտերը բոլոր։
Cette raison est forte, décisive et convaincante. C'est un exemple, un précédent, un modèle à suivre pour moi, le plus malheureux des pères. Meurs, meurs, Lavinia, et ta honte avec toi; et avec ta honte le chagrin de ton père!

*[Titus kills Lavinia.]*

SATURNINUS.
Ի՞նչ արեցիր դու, տմարդի՛, գազա՛ն։
Qu'as-tu fait, père barbare et dénaturé?

TITUS.
Սպանեցի նրան, ում համար թափած իմ արցունքները ինձ կուրացրին։ Ես էլ դժբախտ եմ Վիրգինիոսի պէս։

Եւ ես ունէի տասն հազար անգամ աւելի պատճառ, Քան նա, որպէսզի այս սարսափելի գործը կատարէր։ Եւ ես կատարեցի։
J'ai tué celle qui m'a rendu aveugle à force de me faire pleurer: je suis aussi malheureux que l'était Virginius, et j'ai mille raisons de plus que lui de commettre cette violence; et la voilà faite.

SATURNINUS.
Ի՞նչ։ Քո աղջկան բռնաբարե՞լ են։ Ասա, ովքե՞ր են այդ գործը արել։
Quoi, est-ce qu'elle a été violée? Dis, qui a fait cette action?

TITUS.
Ճաշակէք, տէր իմ, որ ուժ հաւաքէք։
Voudriez-vous manger? Que Votre Majesté daigne se nourrir.

SATURNINUS.
Ինչո՞ւ սպանեցիր այսպէս ցնորուած՝ միակ աղջկադ։

TITUS.
Ես չսպանեցի, այլ նրանք՝ Քիրոնն ու Դեմետրիոսը, Նրանք աղջկաս բռնաբարեցին, կտրեցին լեզուն, Այդ նրանք էին, որ իմ աղջկան այդպէս տանջեցին։
Je ne l'ai pas tuée, mais eux, Chiron et Demetrius, ont violé ma fille, lui ont coupé la langue, ce sont eux qui ont torturé ma fille comme ça.

SATURNINUS.
Ինչու՞ սպանեցիր քո միակ աղջկան այսպես:
Pourquoi as-tu tué ainsi ta fille unique?

TITUS.
Մի՛ անհանգստացէք։ Նրանք այստեղ են՝ կարկանդակի մէջ, Որ մեծ հաճոյքով ճաշակեց նրանց մայրը անյագուրդ, Կերաւ պտուղը իր իսկ արգանդի։ Եւ սա ստոյգ է, եւ սա ստո՛յգ է, վկայ դաշոյնս։
Ne t'en fais pas. Ils sont là, dans un pâté, Que leur mère a mangé avec grand plaisir, Mangé le fruit de son propre ventre. Et c'est certain, et c'est certain, mon poignard en témoigne.

*[Titus kills Tamora.]*

SATURNINUS.
Մեռի՛ր, խելագար, քո այս նզովեալ արարքի համար։
Meurs, fou, pour cet acte maudit.

*[Saturninus kills Titus.]*

LUCIUS.
Կարո՞ղ են տեսնել որդու աչքերը արիւնը իր հօր։ Արեան դիմաց՝ արի՛ւն, մեռի՛ր, չարագործ։ Սպանում է Սատուրնինոսին։ Մեծ իրարանցում։ Լուցիոսը, Մարկոսը եւ միւսները բարձրանում են պատշգամբ։

*[Lucius kills Saturninus.]*

MARCUS.
Տխրադէմ այրեր, քաղաքացիներ, որդիներ Հռոմի, Դուք, որ ցրուել էք թշնամութիւնից, Ինչպէս սառնաշունչ հողմից հալածուած թռչնի երամը, Օ՛ ինձ թոյլ տուէք ձեզ ուսուցանել, Թէ ինչպէս պէտք է ցիրուցան եղած ցորնահասկերը կապել մէկ խրձի Եւ ինչպէս ձուլել միմեանցից անջատ ձեռքն ու ոտքերը մէկ ողջ մարմնի, Որպէսզի իրեն չթունաւորի վշտոտ Հռոմը, Եւ նա, ում առաջ տէրութիւնները ի ծունր են իջնում, Ինչպէս մի անյոյս, խեղճ նաւաբեկեալ, Իրեն չմատնի խայտառակ մահուան։ Բայց եթէ եղեամն ու խորշոմները իմ ծեր տարիքի, Իմ փորձառութեան վկաներն ստոյգ, Չեն կարող դրդել, որ դուք ինձ լսէք։
Hommes affligés, citoyens, fils de Rome, Vous qui êtes dispersés par l'inimitié, Comme une volée d'oiseaux persécutés par le vent froid, O laissez-moi vous apprendre, Comment disperser les brindilles éparpillées, afin qu'il ne soit pas empoisonné par les affligés Rome, Et celui devant qui les puissances tombent à genoux, Comme un pauvre naufrage sans espoir, ne le livrera pas à une mort honteuse. Mais si le présent et le passé sont vrais de ma vieillesse, les témoins de Mon expérience ne sauraient vous motiver à M'écouter.

*[To Lucius.]*

MARCUS [cont.]
Դու խօսիր, Հռոմի ազնիւ բարեկամ, Ինչպէս որ հնում մեր նախահայրը, Երբ հանդիսաւոր լեզուով պատմում էր Սիրուց խիստ հիւանդ, տխուր Դիդոնին Այն աղէտալի գիշերուայ մասին, Երբ հնարամիտ յոյները առան Պրիամոսից Տրոյան։ Պատմիր, թէ ինչպէս Սինոպը դիւթեց մեր ականջները, Կամ ով ներս բերեց ճակատագրի մեքենան Տրոյա, այո՛, մեր Հռոմ՝ Երկպառակտչական վէրքեր բացելով Հռոմի կրծքին։ Իմ սիրտը քար չէ եւ ոչ էլ պողպատ, Եւ ես չեմ կարող պատմել մեր բոլոր ծանր վշտերը, Քանզի հեղեղը իմ արցունքների Կը խեղդի խօսքս նոյնիսկ այն պահին, Երբ նա պէտք է ձեր ուշադրութիւնն աւելի լարի Ու ձեր կրծքի տակ գութ արթնացնի։ Այստեղ է ջահել առաջնորդն Հռոմի, եւ թող նա պատմի, Եւ նրա խօսքից մեր սիրտը պէտք է տխուր հառաչի։
Parle, honnête ami de Rome, Comme notre ancien ancêtre, Lorsqu'il raconta en un langage solennel aux grands malades d'amour, la triste Didon, cette nuit catastrophique, Où les ingénieux Grecs enlevèrent Troie à Priam. Dites-nous comment Sinop nous a percé les oreilles, Ou qui a amené la voiture du destin à Troie, oui, notre Rome, avec des blessures fendues dans la poitrine de Rome. Mon cœur n'est ni pierre ni acier, Et je ne puis raconter toutes nos peines, Car le flot de mes larmes Suffoque mes paroles même au moment Où Il doit attirer davantage ton attention Et éveiller la pitié sous ta poitrine. Voici le jeune chef de Rome, et laissez-le dire, Et de ses paroles nos cœurs devraient soupirer tristement.

LUCIUS.
Ուրեմն, իմացէք, իմ բարեկամներ, Այդ նրանք էին, նզովեալ Քիրոնն ու Դեմետրիոսը, Որ սպանեցին եղբօրը կայսրի, Այդ նրանք էին, որ մեր քրոջը բռնաբարեցին, Եւ նրանց դաժան յանցանքի համար մեր եղբայրների

գլուխը կտրեցին, Ծաղրեցին մեր հօր արցունքները սուրբ Եւ ստորաբար կտրեցին նրա ձեռքը փառապանծ, Որ Հռոմի համար կռուեց քաջաբար՝ Ճամփելով նրա թշնամիներին դէպի գերեզման։ Եւ ես, վերջապէս, անմարդկայնօրէն աքսորուել էի։ Ամուր փակեցին դարպասն իմ առաջ։ Ես արտասուելով ապաստան գտայ թշնամու տանը, Արցունքներիս մէջ նրանք խեղդեցին թշնամութիւնը, Բացեցին իրենց գիրկը իմ առաջ բարեկամի պէս։ Բայց դուք իմացէք, ես՝ աքսորեալս, դարձեալ պահեցի Հռոմն իմ արեամբ Եւ նրա կրծքից ես, թշնամութեան սուրը վանելով, Ուղղեցի դէպի իմ խիստ յոգնաբեկ մարմնի վրայ։ Աւա՜ղ, դուք գիտէք, որ ես չեմ սիրում պարծենկոտութիւն, Իմ սպիները, թէեւ համրաշունչ, բայց վկաներ են, Որ ճշմարտութեամբ իմ խօսքն է լեցուն, Բայց կարծես փոքր-ինչ փորձեցի ցոյց տալ արժանիքներս, Օ՜ ինձ ներեցէք, քանզի երբ կողքիդ չունես բարեկամ, Դու ստիպուած ես ինքդ քեզ գովել։
Sachez donc, mes amis, que ce sont eux qui ont maudit Cyrus et Démétrius, qui ont tué le frère de l'empereur, qu'ils ont violé notre sœur et décapité nos frères pour leur cruelle transgression, se sont moqués du saint de notre père, Glorieux, qui a vaillamment combattu pour Rome , envoyant ses ennemis dans la tombe. Et j'ai finalement été exilé de manière inhumaine. Ils ont fermement fermé la porte devant moi. J'ai trouvé refuge dans la maison de l'ennemi en larmes, Dans mes larmes ils ont étouffé l'ennemi, Ils m'ont ouvert leurs bras comme un ami. Mais tu sais, moi, l'exilé, j'ai de nouveau gardé Rome dans mon sang, Et de son sein, repoussant l'épée de l'inimitié, je l'ai pointée sur mon corps très fatigué. Hélas, tu sais que je n'aime pas me vanter, Mes cicatrices, quoique ternes, sont témoins, Que ma parole est pleine de vérité, Mais il me semble avoir essayé un peu de montrer mes vertus, Ô pardonne-moi, car quand tu n'as pas ami à vos côtés Vous devez vous féliciter.

MARCUS.
Այժմ իմ հերթն է խօսելու։ Նայէք այս երեխային, Ցոյց տալով երեխային, որ գրկել է ծառաներից մէկը։ Որ Տամօրան էր լոյս աշխարհ բերել, Կեղտոտ վիժուածքը անմաքուր մաւրի՝ Գլխաւոր սադրիչն ու ստեղծողը այս աղէտների։ Այդ չարագործը դեռ կենդանի է, Տիտոսի տանն է. Նա կ'ապացուցի, որ այս բոլորը ճշմարտութիւն է։ Այժմ դուք դատէք՝ չէ՞ր կարող Տիտոսն իր վրէժն առնել՝ Տեսնելով այսքան խիստ անտանելի ու անպատմելի վիրաւորանքներ, Որոնցից մէկը չէր կարող կրել ոչ մի արարած։ Այժմ իմացաք ճշմարտութիւնը։ Ի՞նչ կ'ասէք հիմա դուք, հռոմէացիք, Ո՞րն է մեր մեղքը, ցոյց տուէք դուք մեզ, Եւ մենք այստեղից, խեղճ բեկորներս Անդրոնիկոսի, Ձեռք ձեռքի տուած, կը նետուենք ներքեւ, Որպէսզի փշրենք մեր ուղեղները քարերի վրայ, Եւ մեր ողջ տոհմը ջնջուի յաւիտեան երկրի երեսից։ Խօսէ՛ք, հռոմէացի՛ք, լոկ մի բառ ասէք, Ես ու Լուցիոսը, ձեռք ձեռքի տուած, մեզ վար կը նետենք։
Maintenant, c'est à mon tour de parler. Regardez cet enfant, montrant l'enfant étreignant l'un des serviteurs. Que Tamora a apporté la lumière au monde, Avortement sale, Maure impur, le principal instigateur et créateur de ces catastrophes. Ce malfaiteur est toujours vivant, dans la maison de Titus. Il prouve que tout cela est vrai. Maintenant, jugez-vous, Titus ne pourrait-il pas se venger, En voyant tant d'insultes insupportables et indicibles, Dont l'une ne pouvait supporter aucune créature. Maintenant vous savez la vérité. Que dites-vous Romains maintenant? Quel est notre péché ? Montrez-le-nous, pour être effacé de la face de la terre à jamais. Parlez, Romains, dites juste un mot, Lucius et moi, main dans la main, jetez-nous à terre.

ÉMILIUS.
Մօտ եկ, պատուարժան ով հռոմէացի, Եւ դու քո ձեռքով բեր մեր կայսրին, Լուցիոս կայսրին, քանզի քաջ գիտեմ, Որ ժողովուրդը միաձայն կ'ասի. Թող այսպէս լինի։
Viens, viens, respectable citoyen de Rome, et conduis doucement par la main notre empereur, notre empereur Lucius;

car je suis bien sûr que toutes les voix vont le nommer d'un cri unanime.

TOUS LES ROMAINS.
Կեցցէ՛ Լուցիոսը՝ Հռոմի կայսրը։ Կեցցէ՛ Լուցիոսը՝ Հռոմի բարեգութ կառավարիչը։
Vive Lucius, Empereur de Rome ! Salut, Lucius; salut, royal empereur de Rome.

LUCIUS.
Շնորհակալութի՛ւն, ազնիւ, հռոմէացիք, ես կ'ուզէի այնպէս Երկիրը վարել, որպէսզի բուժուեն վէրքերն Հռոմի, Եւ ջնջուեն նրա տառապանքները, Բայց, ազնիւ մարդիկ, ինձ տուէք միջոց, Քանզի բնութիւնը մի ծանր պարտք է դնում ինձ վրայ։ Դուք մի կողմ անցէք, մօտ եկ, հօրեղբայր, Եւ հրաժեշտի արցունքով ցօղիր մարմինն անկենդան։
Grâces vous soient rendues, généreux Romains: puissé-je gouverner de façon à guérir les plaies de Rome, et à effacer ses désastres! Mais, bon peuple, accordez-moi quelques instants, car la nature m'impose une tâche douloureuse. Tenez-vous à l'écart. Et vous, mon oncle, approchez pour verser les larmes funèbres sur ce cadavre.

*[Kisses Titus.]*

LUCIUS [cont.]
Օ՜ թող ընդունեն քո պաղ շուրթերը իմ տաք համբոյրը, Այս արցունքների բիւր կաթիլները թող թափուեն արնոտ քո դէմքի վրայ, Ահա իսկական ու վերջին պարտքը քո ազնիւ որդու։
Ah! reçois ce baiser brûlant sur tes lèvres pâles et froides ces larmes de douleur sur ton visage sanglant; tristes et derniers devoirs de ton digne fils!

MARCUS.
Թող ես հատուցեմ շուրթերիդ վրայ Արցունքն՝ արցունքով, համբոյրն՝ համբոյրով։ Օ՜ եթէ տուրքը այս արցունքների լինէր անքանակ, Անհաշիւ ու մեծ, դարձեալ եղբայրդ քեզ կը վճարի։
Ton frère Marcus nous offre à tes lèvres, larmes pour larmes, et tendre baiser pour baiser. O! lorsque la somme de ceux que je devais te donner serait infinie, impossible à compter, cependant je m'acquitterais encore.

LUCIUS.
Մօտ արի, տղա՛ս, մօտ արի եւ դու սովորիր մեզնից, Թէ ինչպէս պէտք է արցունքներ հեղել։ Քո բարի պապը քեզ շատ էր սիրում, երկար ժամանակ Քեզ օրօրում էր ծնկների վրայ, սեղմում իր կրծքին, Կուրծքը բարձ արած՝ դու քնում էիր նրա երգի տակ, Նա քեզ պատմում էր ոսկեայ հեքիաթներ Եւ մանկութիւնդ լցնում երազով, Ահա թէ ինչու՝ դու որպէս սիրող ու բարի զաւակ, Թափիր մի քանի փոքրիկ կաթիլներ քո նուրբ գարունից, Քանզի բարեգութ մայր բնութիւնը այսպէս է ուզում։ Ընկերն ընկերոջ վիշտն է ամոքում, Դու հրաժեշտ տուր ու յանձնիր հողին մարմինը նրա՝ Սիրոյ տուրք տալով, այս ազնիւ մարդուց բաժանուիր ընդմիշտ։
Approche, enfant: viens apprendre de nous à fondre en pleurs. Ton grand-père t'aimait bien: mille fois il t'a fait danser sur ses genoux, il t'a endormi en chantant, pendant que son tendre sein te servait d'oreiller, il t'a raconté bien des histoires à la portée de ton enfance; en reconnaissance, comme un tendre enfant, répands quelques larmes de tes yeux encore faibles, et paye ce tribut à la nature qui le demande: les amis associent leurs amis à leurs chagrins et à leurs

peines: fais-lui tes derniers adieux; dépose-le dans sa tombe; rends-lui ce service et prends congé de lui.

YOUNG LUCIUS.
Օ՜ իմ պապ, իմ պապ, ես ամբողջ հոգով կ'ուզէի մեռնել, Որպէսզի նորից դու աշխարհ գայիր, Իմ արցունքները չեն թողնում խօսել իմ խեղճ պապի հետ, Հեկեկանքներս խեղդում են, երբ որ բերանս եմ բացում։ Մտնում են ծառաները Ահարոնի հետ։
O grand-père, grand-père! oui, je voudrais de tout mon coeur être mort, et qu'à ce prix vous fussiez encore vivant. O seigneur! mes larmes m'empêchent de pouvoir lui parler: mes larmes m'étoufferont si j'ouvre la bouche.

*[Guards enter, dragging Aaron.]*

UN DES ROMAINS.
Անդրոնիկոսներ, բաւ է վշտանաք, Դուք չարագործի վճիռն արձակէք, Որ պատճառն եղաւ այս սարսափազդու բոլոր դէպքերի։
Enfin, triste famille d'Andronicus, finissez-en avec le malheur. Prononcez la sentence de cet exécrable scélérat, qui a été l'auteur de ces tragiques événements.

LUCIUS.
Թող թաղեն նրա մարմինն հողի մէջ, գլուխն՝ հողից դուրս, Թող մնայ այնտեղ ու կատաղութեամբ ուտելիք խնդրի, Եւ եթէ մէկը կարեկցի նրան, նա պէտք է մեռնի Այդ բանի համար։ Սա մեր վճիռն է։ Հսկէ՛ք, որպէսզի նրա մարմինը հողի մէջ թաղուի։
Enfouissez-le jusqu'à la poitrine dans la terre, et laissez-le mourir de faim: qu'il reste là, qu'il crie et demande de la nourriture: si quelqu'un le soulage et le plaint, il mourra pour ce crime. Tel est notre arrêt: que quelques-uns de vous demeurent et veillent à ce qu'il soit enfoui dans la terre.

AARON.
Օ՜ ինչո՞ւ լուռ էք, իմ ահեղ զայրո՛յթ ու կատաղությի՛ւն, Ես երեխայ չեմ, որպէսզի ստոր իմ աղօթքներով Զղջամ իմ արած չար արարքները։ Եթէ ինձ Աստուած ազատութիւն տար, Տասն հազար անգամ աւելի դաժան բաներ կ'անէի, Եւ եթէ կեանքում ես բարութիւն եմ արել մի անգամ, Իմ ամբողջ հոգով զղջում եմ հիմա։
Eh! pourquoi la rage serait-elle muette? pourquoi la fureur garderait-elle le silence? Je ne suis pas un enfant, moi, pour aller, avec de basses prières, me repentir des maux que j'ai faits. Je voudrais, si je pouvais faire ma volonté, commettre dix mille forfaits pis que tous ceux que j'ai commis; et si jamais il m'arriva dans le cours de ma vie de faire une seule bonne action, je m'en repens de toute mon âme.

LUCIUS.
Թող նախկին կայսրի բարեկամներից մի քանի հոգի Տանեն այստեղից մարմինը նրա Եւ դնեն դագաղն իր նախնիների գերեզմանոցում։ Փակէք իմ հօրը ու Լաւինիային մեր ընտանեկան դամբարանի մէջ։ Գալով այդ անյագ, անկուշտ վագրուհուն՝ Տամօրային նենգ՝ Պէտք չէ ո՛չ թաղման արարողութիւն, ո՛չ սգի զգեստ, Թող չղօղանջեն զանգերը թաղման, Թող գազանները ու թռչունները յօշոտեն նրան, Քանզի նա ապրեց գազանի կեանքով, Նա արժանի չէ ոչ մի գթութեան. Թող մեր վճիռը ի կատար ածեն նրա նկատմամբ, Որից

ծնուեցին մեր վշտերն անհուն։ Այս բանից յետոյ մենք կը հաստատենք այնպիսի կարգեր, Որ էլ չցնցուի նման դէպքերից տէրութիւնը մեր։ Գնում են։

Que quelques bons amis emportent d'ici le corps de l'empereur, et lui donnent la sépulture dans le tombeau de son père. Mon père et Lavinia seront sans délai enfermés dans le monument de notre famille. Quant à cette odieuse tigresse, cette Tamora, nuls rites funèbres ne lui seront accordés, nul homme ne prendra pour elle les habits de deuil: nul glas funéraire n'annoncera ses obsèques: qu'on la jette aux bêtes sauvages et aux oiseaux de proie. Sa vie fut celle d'une bête féroce; elle vécut sans pitié; et par conséquent elle n'en trouvera point. Veillez à ce qu'il soit fait justice d'Aaron, de cet infernal More, l'auteur de tous nos désastres: ensuite nous allons travailler à bien ordonner l'État, afin que de pareils événements ne viennent jamais hâter sa ruine.

*[Fini.]*

]{}[

## TRANSLATION BY LILIT "BABA" YAGIAN (1978)

